# ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ

№ 9 ● 1985

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1923 ԹՎԱԿԱՆԻՑ







Լուսանկարները՝ ԶԱՎԵՆ ԽԱՉԻԿՅԱՆԻ

## Բարի ճամփա...

Ես հիշում եմ այսօր նորից.
Ուրախությամբ սիրտս էր լցում
Այն առավոտ, երբ հայրս ինձ
Դեպի դպրոց էր ուղեկցում:

Ու հորս հետ արագ-արագ
Իջնում էինք դեպի ներքև,
Ուռիները ջրի վրա
Կապույտ մշուշ էին հագել:

Գնում էի ես առջևից՝
Թևատակիս «Այբբենարան»,
Տեսնում էի արդեն հեռվից
Մեր դպրոցի դռները լայն:

Առավոտը այնքան մաքուր,
Առավոտը այնքան էր պարզ,
Բայց հայրիկս գալիս էր լուռ,
Դե, հոր սիրտ է, ի՞նչ իմանաս:

Մտքերի մեջ ընկած խորին,
Մինչև դպրոց հետս եկավ:
Չխրատեց ճանապարհին,
Չասաց իր խոսքը հայրական:

Բայց ես զգում էի արդեն,
Եվ գիտեի, թե ինչ կասեր,
Նա ուզում էր նախևառաջ՝
Ես լինեի աշխատասեր:

Անցանք ծառերը ստվերոտ,
Ու խնձորի հասած այգին,
Ու կանգնեցինք դպրոցի մոտ,
Կարկաչահոս առվիափին:

Հայրս ժպտաց բեղի տակից
Այնպես պայծառ, այնպես բարի,
Գուրգուրանքով գրկեց նա ինձ՝
Գնա, որդիս, լավ սովորիր:

Երգեց առվակը քաղցրաձայն,
Նա էլ բարի խոսքեր մաղթեց,
Այդ պատկերը առավոտյան
Դեռ կանգնած է աչքերիս դեմ:

Սիրտս հրճվում էր բախտավոր,
Եվ իմ սրտի նման ուրախ
Առավոտն էր ուղեկցում ինձ՝
Թռչունների ձայնով խաղաղ:

Ես գնացի... Ու կարծես թե
Դեռ ուղեկցում են իմ կյանքին
Եվ առավոտն այն արծաթե,
Եվ բարի խոսքն իմ հայրիկի:

ԱՐԹՈՒՐ ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ
Արր. ՍՍՀ, Շամխորի շրջ., գ. Չարդախլու
10-րդ դաս.

## Լույս խաղաղության

Ես կենսուրախ մի աղջիկ եմ
Իմ քաղցրանուն Հայաստանի,
Սիրտս, հոգիս սիրով լցում,
Գրին, գրքին էլ միշտ գերի:
Եվ լցուն եմ իղձով մի մեծ,
Թևեր առնել, օդում ճախրել՝
Արծիվներին ընկեր դարձած,
Թռչունների երամ մտած՝
Դեպի արևը ես թռչեմ...
Ու ինչպես նոր մի Պրոմեթևս՝
Վերակրկնեմ մեծ սխրանքը հին լեգենդի,
Խիզախումով ու խոյանքով իմ տարերքի
Նոր լույս բերեմ ու ջերմություն՝
բոլոր մարդկանց,
Խաղաղության դրոշ բերեմ՝
Արարումով իմ վեհացած...

ԼԻԼՅԱ ՆՈՒՐԲԵԿՅԱՆ
Երևանի № 106 միջն. դպրոց,
6-րդ դաս.




Եթե Հենդոն երկու տարի էլ նստի նույն դասարանում, համադասարանցիներին հորեղբայր կգա: Հիմա էլ գալիս է, բայց՝ կրտսեր հորեղբայր: Այնպես որ, պարտուսը Հենդոյից սարքել է վեցերորդցու կենդանի հուշարձան:

Երբ ժողկրթբաժնից գալիս են դասալսումի, Հենդոն քշվում է դպրոցի այգի՝ ծառ էտելու, ձյուն կուտակելու, ոռոգելու, նայած քառորդին: Հենդոյի գոյությունը ու՞մ հայտնի չէ, դպրոցի ղեկավարությունը ժողկրթբաժնի տեսուչների հետ Հենդոյի հանդիպումը համարում է անցանկալի: Մի փոքրիկ դասասենյակում երկու կողմնակի մարդու ներկայությունը չափազանց շատ է: Եվ իսկապես, դասարան մտած միամիտ մեկը առաջին պահին Հենդոյին դաս լսող կկարծի. նստած է վերջին նստարանին, պատուհանի մոտ, երեխաներից մի գլուխ բարձր ու ձանձրույթով լի:

...Ահա թիթեռը վայրէջքի գնաց, և երփներանգ այդ շարժումը թարմություն էր ձանձրույթի գորշ ֆոնի վրա: Թիթեռը իջավ ծաղկաթերթի ուղիղ եզրին, այն է՝ թևերը ծալելու էր, թերթիկը հակվեց, և թիթեռը թևին տվեց, ելավ վեր, իջավ, նորից թերթիկը հակվեց, թիթեռը ելավ... Թիթեռի հիմար համառությունը Հենդոյին կալավ:

Իսկ դասասենյակի պատուհանները գարնան դեմ փակ են: Ապակուց դենը երևացող թիթեռի ջանքը թվում էր անիրական: Ինչ-որ իմաստ կար այդ խաղի մեջ, որ ապակուց չէր թափանցում:

Ուժեղ բութ մատով Հենդոն պտտեց փեղկի վրա ծռած տասանոց մեխը և (փեղկը լրիվ հագած չէր շրջանակին) չորս մատով քաշեց տակից: Ամեն հայացքը գրատախտակին հառած՝ Հենդոն ուժ տվեց դաստակին (նա ուժեղ էր, և դիմագծերը կարող էին չմասնակցել մարմնի ջանքին): Այն պահին, երբ անձոռնի փեղկը ճռնչալու էր, Հենդոն մյուս ձեռքով կավճի մի կտորով խփեց երկրորդ նստարանին նստածի ծոծրակին: Անակնկալի եկած տղան վեր թռավ տեղից: Աղմուկի տակ Հենդոն լուսամուտի փեղկը մյուսից անջատեց: Ծոծրակին հարված ընդունած տղան, անշուշտ, ըզգացել էր Հենդոյի ուժը, բայց մեկ է, որ վեր էր թռել՝ կպավ իրենից ետ նստածին: Հենդոն քիչ-քիչ բացում էր փեղկը: Նրա թոքերը թարմ օդի համին ընկան, և Հենդոն, իհարկե, չափն անցկացրեց: Ուսուցչուհին գրատախտակից շուռ էր եկել, սաստել էր դասարանը, բայց կենտրոնանալ չէր կարողանում: Էլի ինչ-որ բան իր տեղում չէր: Մեկ էլ զգաց, որ դրսի շունչը խուժել է սենյակ:

— Ծածկիր, այ տղա:

Հենդոն ծածկում է դժկամությամբ և երկու րոպե նստում է հուսահատ-զգաստ: Իսկ շուրթերը շարժվում են, հայացքը շարժվում է դասարանով մեկ: Հենդոն այս էլ քանիերորդ անգամ համրում է 22 համադասարանցիներին: Իր այդ կենտրոնացած տեսքով նա նման է արտեզրին կանգնած պատանի հորթարածի: Նա այս տարվա հորթերի հետ կզբաղվի այնքան ժամանակ, մինչև սրանք փոխադրվեն հաջորդ դասարան, հետո կընդունի հինգերորդից եկած կաթնակերներին:

Այսպես, Հենդոն, ծնողները, ուսուցիչ-

ները, ժողկրթբաժինը, բոլորը սպասում են, որ Հենդոյի պարտադիր ուսուցման տարիքն անցնի: Իսկ մինչ այդ Հենդոն կնստի, կլսի-չի լսի՝ կրնդարմանա: Եթե եղանակը անձրևային է, գլուխը բռունցքներին դրած կննջի քնաբեր դասաժխորի տակ: Դիվոտացնում է միայն աշխարհագրության ուսուցչուհու ճիչը, իսկ եթե արև է կամ պարզկա ցուրտ, հինգ-տասը րոպեն մեկ ոտքի կկանգնի, ճմլկոտալով, կճարճատեցնի զորեղ հոդերը... Ուսուցչուհին ապշանքով կամ զզվանքով հաշվում է հոդերի համազարկը, հետո պարզապես դուրս է հրավիրում նրան: Հենդոն դռնից դուրս է գալիս, գալիս կանգնում է պատուհանի տակ, և դա նշանակում է, որ ուսումնառությունը այսօրվա ավարտվեց, պայուսակը պիտի շպրտվի դուրս: Դասարանը իրարով է անցնում: Թե ուսուցչի զայրայի ուշադրությունից են վախենում, թե ուրախ են, որ գործ բացվեց, և պահը որսում, պայուսակը նետում են դուրս:

Հենդոն օդում չանթում է պայուսակը, ինչ մեջը մնաց՝ դրա տերն է, և ծանրումեծ գնում է դպրոցի բակով: Պայուսակը երախը բաց, կախած ունի միջնամատի ծայրագույն հոդից. իբր՝ հետս է, բայց իմը չէ, իբր՝ զզվում ենք սատկած կատվից, բայց աղջիկ չենք, որ չկարենանք պոչից բռնած տանենք թաղենք... Վերջին հաշվով՝ կրում եմ մորս խաթեր:

— Հենրիխ, եկ գրատախտակի մոտ:

Հազվադեպ կանչ է: Սա կնշանակի՝ ուսուցչուհին էլի տխուր է, ընկճված:

Հենդոն ռանդած, յաքած տախտակ է, դու կավիճով վրան գրում անցնում ես առաջ, այնտեղ տառերը փոշիանում, թափվում են ցած: Ոչ գիր, ոչ էլ խոսք է հանդուրժում:

Իսկ ցուցեն կավի՞ճն է, պարզապես, հում կիր, որովհետև, ահա, Հենդոն տեղից ժպտալով կանգնեց գրատախտակի մոտ, և նրա ժպիտը բթամիտի չէ, այլ բացահայտ քամահրական: Նա այնպես վերջնական է արհամարհում գիտելիքը, ասես մի անգամ արդեն տիրապետել է դրան:

Հենրիխ անունը Հենդոյի վրա մոգական ազդեցություն ունի, այլապես նա մեկ անգամ ասելով պատրաստակամ տեղից չէր ելնի. կճմլկտար, ձեռքը թափ կտար, կասեր՝ չգիտեմ: Բայց Հենրիխը նրան կտրում է դասարանից ու առանձնացնում թագավորական շուքով: Բացի այդ,



նա սիրում է ուսուցչուհու առոգանությունը, թերթոտխ լավաշի գույնի մաշկը, աղջնակի քիթուբերանը, տիկնիկի ծամերի նման փափուկ ծամերը:
— Հենրիխ, թվիր հոլովները:
— Հաջա՞ն:
— Թվիր հոլովները:
Դասարանը թամաշի ակնկալիքով սրսկըվում է, իսկ Հենդոն իբր մտասուզվեց: Ձախ ձեռքը կանթեց գոտկատեղին, աջ ափը խփեց ճակատին ու այդպես պահեց: Գործողությունը իմաստավորելու համար մնում էր ափը զգույշ շուռ տար՝ տեսնելու ճանճին կպա՞վ, թե ոչ: Ուսուցչուհին մտացրիվ նայում էր նրան, և Հենդոն դասարանին նայելու փոխարեն նայում է առաստաղին:
Առաստաղին նայելով՝ գուցե թե մի բան սովորես եկեղեցում, բայց Հենդոյի կանգնած տեղից հարյուր կիլոմետր շառավղով չկա ոչ մի եկեղեցի, նույնիսկ հասարակ մատուռ չկա:
Դասարանից մի օգնական շշուկ է գալիս, որից Հենդոն մի բառ է որսում.
— Թվական,— ու շիտակ նայում է ուսուցչուհուն:
— Ի՞նչ...
— Թվական...
— Ինչ թվական,— ջղայնությունը սիրում է ջղային լեզու:
— Թվական, էլի՜,— զզված շպրտում է Հենդոն:
— Վա՜խ,— նվաղեց դասարանի գերազանցիկը, և դասարանը ձեռից գնաց: Ինքնատիրապետման ջանքից ուսուցչուհու բերանը ծամածռվեց, դեմքը կարմրեց, պարանոցի երակները ուռան, ու... նա էլ պայթեց: Դասարանը կապը կտրեց: Խըռխըռում են, վրնջում են, բառաչում են, դոփդոփում են, գալարվում են, առիթ էր եկել՝ մեկը հասցրեց մյուսի ծոծրակին: Ոտքի վրա հռհռացողի տակ մի սուր բան դրին, սա նստեց ու ոռնոցով թռավ:
— Նստե՞մ,— անմեղ հարցրեց Հենդոն:
Չասացին՝ նստի: Հենդոն նստելուց կըշտացած էր ու այնքան էլ դեմ չէր կանգնելուն, բայց դասարանը ձեռից գնում էր: Եվ Հենդոյի դեմքը խոժոռվեց: Հետո ըսպառնաց՝ ափի կողով իր կոկորդը սղոցելով: Նրա վիզը կտրելու բան էր, և այդ շարժումը տպավորություն թողեց:
Դասարանը տաշտը լցրած ջրի նման ճողփալով հանդարտվում էր:
— Դու ինչ արարած ես,— ուսուցչուհին վերագտել էր խոսելու ընդունակությունը:
Ուրեմն, նրան դաս են հարցնում՝ խընդալով լիցքաթափելու, բռռալով հանդարտվելու կամ դասաժամը կարճելու համար, և աշակերտներից ոչ մեկի մտքով չի անցնում հատուցել գնե «3»-ով: Քառորդը փակվում է, և դասղեկը անարտահայտիչ կարդում է.
— Սեյրանյան Հենրիխ,— հայոց լեզու՝ «երկու», հայ գրականություն՝ «երկու», աշխարհագրություն՝ «երկու»:
Տանը նույն ոգով կարդում է հայրը, և մայրը արձագանքում է ամեն առարկային.
— Երկրաչափություն՝ «երկու»:
— Վա՜շ:
— Պատմություն...
— Վա՛խ:
Ռուսաց լեզու...
— Վախ, անլեզու տղես:
Բուսաբանություն...
— Վախ, բանվոր տղես:
— Անգլերեն...
— Վա՜շ, ռանչպար տղես...
— Աշխատանք՝ «հինգ»:
—... Ա՛խ, մեռնեմ տուն պահող որդուս...

Հենդոն իրոք ոսկի ձեռքեր ունի: Անհընար է մարզելով ու վարժվելով այդպիսի ձեռքեր ունենալ, անհնար է նման ձեռք ստանալ որևէ եղանակով, դա ոսկու նըման պիտի լինի ու գտնվի բնության մեջ:
Հենդոյին տեսնել է պետք փայտի գործ անելիս: Իր գնդլիկ մատներով մանր-մանր, ճշգրիտ, կլանված աշխատում է դպրոցի արհեստանոցում, իսկ փայտերը կցմցելով զանգին սպասող ու իր դանդաղկոտությունը ծաղրող փինաչիներին մի պատասխան ունի.
— Իմս մեկ է, հըմը քեկ է:
Զգում ես, որ մարդը հյուսն է ծնվել, որ փայտի զգացողությունը հետն է աշխարհ բերել:
Հենդոն շինում է աթոռ և փորձել-ցուցադրելու մի եղանակ գիտի. աթոռը դնում է հատակին, ինքը դազգահից ցատկում է վրան: Եվ միայն հատակի տախտակներն են իրար գալիս: Իսկ իր գնահատանքին ներկայացրած աթոռները փորձարկում է անհամեմատ ներողամիտ՝ բռունցքով իջնում է նստատեղին. դիմացավ՝ լավ, չըդիմացավ՝ սարքիր նորից:
Ժամանակը եկավ, և Հենդոյի կարիքը զգացին: Դպրոցի կահույքը ներկի շերտե-

րի տակ փտել էր: Մատակարարները առաջարկել էին կամ մեկ-երրորդով պատրաստի գույք, կամ լրիվ հաշվով՝ փայտանյութ... Անտառից հեռու, աչքից հեռու տեղ՝ ամենքն էլ փայտեղենի կարիք ունեին, ու որոշվեց՝ տախտակ ու գերան: Կպատրաստեին նրանք իրենց ուժերով: Իհարկե, նկատի ունեին նաև Հենդոյին: Հենդոն ոգևորությամբ հանձն առավ իրենց դասասենյակում արվելիք գործը: Դասերից հետո մնում, աշխատում էր: Եվ ամեն առավոտ կաթնակերներից մեկը իր ճռճռող նստարանի կայունությունը զգալով, իր փեղկի բացվել-փակվելը տեսնելով, դըժժում էր հրճվանքից: Հենդոյի համար այդ անասնական հրճվանքն էլ մեծ վարձատրություն էր, բայց գործի դիմաց, համենայն դեպս, նստարանի տիրոջ ճակատին մի կենտ կտոց էր տրաքացնում... գործը՝ չէ, քաշը հաշվի առնելով:

— Որ ձրիակերությունից հանկարծ չփքվեք,— բացատրում էր:

Այդ չարաբաստիկ քառորդը արագ անցավ: Դասղեկը ըստ ցուցակի կարդաց Հենդոյի անունը: Հենդոն կիսանստած խուլ ականջ էր դնում միապաղաղ «երկու»-ներին, մեկ էլ...

— Ի՞նչ,— հարցրեց Հենդոն:

— Աշխատանք՝ երկու,— մեքենայորեն կարդաց դասղեկը:

— Ո՞նց թե,— չհասկացավ Հենդոն:

Դասղեկը բարձրացրեց գլուխը, հետո նայեց թերթիկին, կասկածեց, բայց սաստող ձայնով կրկնեց.

— «Երկու»:

Դասարանը ապշած էր:

— Հա-ա՞,— անարդարությունը Հենդոյին թաղել էր:— Ուրեմն՝ «երկու»:— Եվ անդյուրաշարժ, բարեհոգի ու միշտ ժպտացող Հենդոն այլայլված դուրս եկավ տեղից՝ ձեռքի հետ փեղկը պոկելով, հետո մյուս ձեռքով պոկեց մյուս փեղկը, առաջ գնաց: Ուսուցչուհին վեր թռավ տեղից, Հենդոն նրա աթոռը բարձրացրեց, խփեց հատակին՝ առեք ձեզ երկու: Նայեց շուրջը՝ ջարդելու բաներ էլի կային, բայց արհամարհական ձեռքը թափ տվեց, դըռան մոտ էր, բայց իր արարքին, ըստ երևույթին, վերջնական իմաստ տալու համար գնաց դեպի լուսամուտը, մի վերջին կտոց բաժին հանեց պատուհանի տակ նստածին ու դուրս թռավ պատուհանից: Պայուսակը նրա ետևից նետող չեղավ: Նա չսպասեց էլ:

**ՎԻԿՏՈՐ ՀՈՎՍԵՓՅԱՆ**

# Կռունկ

Եթե կուզեք տեսնել կռունկ,
Ջրամարգեր գնացեք դուք...
Եվ դժվար թե չհարցնեք
Դուք զարմացած.
«Ո՞վ է սրա վիզը այսքան
Միրուն քաշել.
Փետուրները ո՞վ է այսքան
Շքեղ նախշել.
Ո՞վ է սրա աչքերն այսքան
Ջուլալ բացել
Ու կոկորդում անուշ այսքան
Ձայնիկ լցրել.
Ո՞վ է նրա ոտքերն այսքան
Նրբին տաշել...
Մարջան կտուց. այնքա՜ն, այնքա՜ն
Խորունկ աչեր...
Եվ իզուր չեն նրան դրել
Երգերի մեջ՝
Ու դարձրել է նա այդ երգն էլ
Իր նման... պերճ:

Նկ. ՄԻՀՐԱՆ ՔԵՇՕՂԼՅԱՆԻ

Մեր խմբագրությունում գրքեր կան, որ աչքի լույսի պես պահպանվում են արդեն 60 տարի: Եվ ինչպես վեր ձգվող ճյուղն է անմիջականորեն կապված արմատի հետ, այնպես էլ 60 տարիների ընթացքում միմյանց փոխարինող խմբագիրներն ու աշխատակիցներն են կապված թերթի լույսընծայվող բոլոր համարների հետ: Պահպանվում են դրանք խմբագրի պահարանում՝ ոչ թե անվնաս պահելու (որ պակաս կարևոր չէ), այլ ձեռքի տակ ունենալու, մեզ դրանց արմատներին շատ մոտ զգալու, երբեմն-երբեմն շոշափելու համար:

**ՄՆԱՑԱԿԱՆ ԶՈՀՐԱԲՅԱՆ**
«ՊԻՈՆԵՐ ԿԱՆՉ» թերթի խմբագիր

# Թերթ երեխաների համար և նրանց մասին





Գինն է 2 կոպեկ

ՊԻՈՆԵՐ ԿԱՆՉ

ՕՐԳԱՆ

ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ՇԱԲԱԹ, 24 ՀՈԿՏԵՄԲԵՐԻ 1925 ԹԻՎ

№ 1

«ՊԻՈՆԵՐ-ԿԱՆՉ»-Ի ՀՐԱՏԱՐԱԿՄԱՆ ԱՌԹԻՎ

*Մինչև այժմ հրատարակվող «Պիոներ Ղեկ»-ը չէր բավարարում պիոներներին, նա գլխավորապես կոլվարների և ոգակավարների համար էր:*

ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԱՇԽԱՏՈՂ
ՆԵՐԻ ՀԱՄԱՀԱՅԱՍՏԱՆՅԱ
ԽՈՐՀՐԴԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ

*Հոկտեմբերի 21-ին Երևան*

Այսպիսի սերունդներ են հաջորդել միմյանց 1925 թվականի հունիսի 4-ից սկսած:

Հիմա մենք ենք փոխարինում նրանց, ովքեր ավանդույթներ են ստեղծել, ովքեր դեմք են տվել և հեղինակություն բերել թերթին:

Նախկին երկշաբաթաթերթն այսօր հրապարակվում է շաբաթը երկու անգամ, գունավոր է, ունի 200 հազարից ավելի ընթերցողներ:

Թերթում տարիներ շարունակ աշխատել են գործին մոլեգին նվիրված մարդիկ, որոնց կողքին սովորական մարդն էլ նմանվել է նրանց: Թերթն անեցրել է լրագրողների սերունդներ, որոնք աշխատում են այս և այլ խմբագրություններում: Թերթին կից վաղուց ստեղծվել է և մինչև այսօր գործում է «Ծավիղ» պատանեկան խմբագրությունը: Տարբեր տարիներին նրան աշխատակցել են պատանի լրագրողներ, որոնք հետագայում դարձել են նույն և այլ խմբագրության աշխատակիցներ: Տողերիս հեղինակը նույնպես իր գործունեությունն սկսել է «Ծավիղ»-ի խմբագրությունում: Այսօր խմբագրության վեց աշխատակիցներ «Ծավիղի»

վերջին 6—7 տարվա «շրջանավարտներն» են, կենսախինդ, երիտասարդ մարդիկ, որոնց աշխատանքի նպատակը պատանիների թերթն ավելի ու ավելի հետաքրքիր դարձնելն է:

...Տասնամյակներ առաջ իրենց առաջին բանաստեղծություններն են տպագրել այս թերթում տակավին դպրոցականներ Հրաչյա Հովհաննիսյանը, Վահագն Դավթյանը, Վարդգես Պետրոսյանը, Սիլվա Կապուտիկյանը, Ռազմիկ Դավոյանը: Թերթի էջերում մեր ընթերցողներին իրենց արժեքավոր խոսքն են ասել ճանաչված գիտնականներ, արվեստագետներ, անվանի մասնագետներ, բանվորներ, հասարակական գործիչներ: Իսկ պատանեկության ամենասիրելի գրողներից մեկը՝ Վախթանգ Անանյանը, ավելի քան տասնյոթ տարի ղեկավարել է «Պիոներ կանչ» թերթին կից գործող պատռվաստի հանրապետական շտաբը: Նրա և մեր ընթերցողների ջանքերով հազարավոր վայրի ծառեր պատվաստվեցին անտառներում, հանապարհների եզրերին, ստեղծվեցին նոր այգիներ, նոր ծառուղիներ:

Այսօր արտակարգ հարուստ է թերթի ամենօրյա փոստը: Ինչի մասին ասես, որ չեն գրում, հարցնում պատանի թղթակիցները: Ամենափոքր կենցաղային հարցերից մինչև գիտության ու տեխնիկայի, արվեստի ու գրականության խնդիրները, մարդկային պարզ փոխհարաբերություններից մինչև աշխարհի բարդ իրադրությունները: Տասնյակ, հարյուրավոր պատանի թղթակիցներ ունի «Պիոներ կանչը», որոնք նրա լավագույն բարեկամներն են:

Հիմա, երբ փորձում ենք մի քանի խոսքով ամփոփել այն, ինչ արվել ու արվում է, երևի պետք է ասել. միշտ չէ, որ թերթի համարները միօրյա կյանք են ունեցել: Բազմաթիվ թեմաներ, հրապարակումներ լույս են տեսել առանձին գրքերով, թերթի մի շարք նախաձեռնություններ ավանդույթ են դարձել, ապրում են ինքնուրույն կյանքով, իսկ մեր այսօրվա սովորական աշխատանքում ծնվում է թերթի այս օրերի և տարիների պատմությունը:

Երբ ամեն տարվա վերջին համարը կարվում է համալիրում, որը դառնում է առանձին գիրք ու դրվում նախորդների կողքին, ակամա մտածում ես՝ էլի մի հատոր ծնվեց, հատոր, որը փառաբանում է պայծառ մանկությունը, խաղաղ, ստեղծագործ աշխատանքը, մանկական ջինջ, պայծառ երազանքները: Ուրախանում ես, որ դու էլ դրանում մաս ունես: Համոզվում ես, որ կարևոր, մեծ ու նշանակալի գործ ես կատարել: Նորից գրիչ ես վերցնում, որովհետև ընթերցողը սպասում է թերթի հաջորդ համարին:

## ՊԻՈՆԵՐ—ԴՊՐՈՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

# Ճնորհվեց վզկապ կրելու իրավունք

Երևանի Ա. Մռավյանի անվան № 25 միջնակարգ դպրոցի Վ. Տերեշկովայի անվան պիոներական դրուժինայի խորհուրդը որոշել էր, որ 3-րդ դասարանի աշակերտները արժանի են վզկապ կրելու պատվին, քանի որ ակտիվորեն մասնակցել են դպրոցի ներքին կյանքին, օգնել են պիոներներին զանազան օպերացիաների իրագործման ժամանակ, կազմակերպել են հետաքրքիր միջոցառումներ: Դպրոցում չեն մոռանում տիեզերագնացի օրվան ու մարտի 8-ին նվիրված նրանց ցերեկույթները դասղեկ ընկ. Կոստանյանի ղեկավարությամբ:

Վ. Ի. Լենինի անվան հրապարակում երրորդցիներր տվեցին իրենց հանդիսավոր խոստումը.

«Ես, ընդունվելով Վ. Ի. Լենինի անվան համամիութենական պիոներական կազմակերպության շարքերը, իմ ընկերների առջև հանդիսավոր կերպով խոստանում եմ.

— ջերմորեն սիրել իմ հայրենիքը,

— ապրել, սովորել և մարտնչել, ինչպես ավանդել է Մեծ Լենինը, ինչպես սովորեցնում է կոմունիստական կուսակցությունը,

— միշտ կատարել Սովետական Միության պիոներների օրենքները»:

Փոքրիկ պիոներներր համբուրեցին դրուժինայի դրոշը և ծաղիկներ դրեցին Լենինի հուշարձանին: Տարեց մարդիկ կանգնել ու ժպտում էին. պիոներները նրանց գործն են շարունակում: Նրանք հիշում էին այն վզկապները, որ մի ժամանակ ալիքվում էին իրենց կրծքին... Իսկ գուցե վզկապների կարմիրը նրանց հիշեցրեց հայրենիքի ազատության համար իրենց զոհված ընկերների թափած արյունը...



ԱԼԵՔՍԱՆԴՐ ՏԵՐ-ԹԱԴԵՎՈՍՅԱՆ

# ԶԻՆՎՈՐԱԿԱՆ ՀԻՆ ԿԱԹՍԱՅԻԿԸ

Նկ. ՌՈՒԲԵՆ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ

Կաթսայիկն անցել էր Կովկասից մինչև Բեռլին, իր տիրոջ հետ սեղմվել էր գետնին, երբ թշնամու գնդակները սուրում էին զինվորի գլխավերևով, ընկղմվել էր կեղտոտ ջրում՝ ոտքով ճահիճներն անցնելիս: Բաժակ էր ծառայել, երբ նրա տերը ընկերների հետ խմել էր հաղթանակի առաջին թասը: Հետո անցնելով շատ քաղաքներով, հասել էր լեռնային խուլ գյուղը: Նախկին զինվորի երեխաները կաթսայիկն ամրացրել էին աղբյուրի ակին ու դրանով ջուր էին խմում: Կաթսայիկը դեռևս չգիտեր, որ պատվավոր տեղ կգրավի մարտական փառքի անկյունում, որը կստեղծվի գյուղական ակումբում: Մի անգամ տերը խնամքով այն վերցրեց, տարավ և ուշադիր լսողների խմբի առջև պատմեց այն խիզախությունների մասին, որոնց վկան է եղել այդ հին, զինվորական կերակրամանը:

Մի քանի տարի հետո ակումբը վերանորոգվեց, ցուցանմուշները նախօրոք տեղավորել էին պահարանում, այնուհետև ինչ-որ մեկին բանկա էր պետք եղել՝ ներկը խառնելու համար: Նա պահարանից հանել էր կաթսայիկը և օգտագործել իր նպատակների համար: Ակումբը վերանորոգել էին: Ցուցանմուշները դրել էին իրենց տեղերում, իսկ կաթսայիկը չորացած ներկից մաքրել ոչ-ոք չցանկացավ, շպրտեցին ետևի բակը: Տարիներ անցան, և նվիրական երկաթեղենը ընկած էր թափոնների կույտի մեջ: Մի անգամ փոքրիկ տղաները եկան թափոնների մոտ, երկար քրքրեցին և վերջապես հասան կաթսայիկին: «Եթե լավ հղկենք, սրանից լավ հոկեյի տափօղակ կստացվի»,—որոշեցին նրանք:

Ամբողջ ձմեռ փոքրիկ տղաները մականներով անողոք հարվածում էին նախկին կաթսայիկին, որն հաճախ դուրս էր թռչում դարպասից: Այդպիսի դեպքերում երեխաներն ուրախանում էին: Իսկ մե-

տաղի կտորը մտածեց, որ երևի արդեն օգտակար է դարձել մարդկանց համար: Բայց ահա խաղահրապարակ նետվեց սև, ռետինե տափօղակը:

— Ուռռա՜,—գոչեցին տղաները:

Նրանցից մեկը վերցրեց նախկին կաթսայիկը և շպրտեց մոտակա աղբակույտի մեջ: Այն ընկած մնաց մինչև գարուն, մինչև հալվեց ձյունը, իսկ հետո այնպես խրվեց հողի մեջ, որ միայն մի ծայրն էր երևում: Մի պարզկա, գեղեցիկ օր այդ կողմով անցնում էին երկու տարեց տղամարդ: Երբ հասան կաթսայիկին, նրանցից մեկը զարմացած բացականչեց:

— Այ քեզ բան, սա հո իմ կաթսայիկն է, իհարկե, ահա եզրին իմ փորագրությունը: Նա զգուշությամբ քանդեց հողը, հանեց կաթսայիկը, խնամքով մաքրեց ու տուն տարավ...

# ԱՂԲՅՈՒՐԸ

Գյուղի ծայրում, ուր աճել էին բարձրակատար դարավոր ուռենիները, գետնի տակից խոխոջում էր աղբյուրը: Ջուրը զուլալ էր ու համեղ: Օրվա մեջ աղբյուր էին գալիս կանայք, լցնում դույլերը, հանգրվանում ուռենիների տակ, որ ուժ հավաքեն հետադարձ ճանապարհի համար: Միայնակ ճամփորդները, կռանալով ջրի վրա, հագեցնում էին ծարավը, օրհնում աղբյուրը կառուցող վարպետին: Ծերունիները, որոնք ապրել էին դժվարին կյանքով, սիրում էին վիճել, զրուցել ուռենիների տակ՝ աղբյուրի մոտ, և վերհիշել հեռավոր ժամանակները:

Եվ ահա ինչ-որ մեկը որոշեց, որ մարդկանց հարմարության համար ջուրը պետք է տանել յուրաքանչյուր տուն: Ազատ աղբյուրը բետոնապատեցին և ջուրը խողովակներով գյուղ տարան: Ամեն ոք իր բաժին ջուրը տարավ իր տուն: Հեշտացավ այգիներ ջրելը: Մարդիկ առավոտից մինչև ուշ գիշեր ջրում էին ծառերը և աշնանը հավաքում հարուստ բերք:

Բայց շուտով աղբյուրը պատժեց նրանց, ովքեր զրկեցին իրեն ազատությունից:

Աշխատանքով զբաղված մարդիկ դադարեցին հանդիպելուց, միասին հավաքվելուց, ուրախություն ու տխրություն բաժանելուց: Հին ուռենիները, զրկվելով խոնավությունից, չորացան: Իսկ ճամփորդները թակում էին բարձր դարպասները և տերերից մի կում ջուր խնդրում:

# ՊԻՈՆԵՐ–ԴՊՐՈՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

# Մետրո-շինարարների մոտ

Թե պիոներներից ում մեջ այդ միտքն առաջացավ, հիմա ոչ ոք չի հիշում: Եվ հետո՝ դա այժմ այնքան էլ կարևոր չէ: Կարևորը այն է, որ առաջարկությունը ջերմությամբ ընդունվեց բոլորի կողմից:

Եվ Երևանի 2-րդ միջնակարգ դպրոցի Օլեգ Կոշևոյի անվան ջոկատի պիոներները հաջորդ օրը հավաքեցին և պատրաստեցին հայերեն և ռուսերեն լեզուներով գեղարվեստական գրքերի մի մեծ կապոց:

— Կհանձնենք «Հոկտեմբերյան» կայարանի տեղամասում աշխատողներին,— ասաց ջոկատի խորհրդի նախագահ Գևորգը,— նրանք շատ կուրախանան:

Այդպես էլ արեցին: Ջոկատով հյուր գնացին մետրոշինարարներին:

Կարմիր փողկապավորներին մետրոշինարարները սիրով ընդունեցին: Ստորգետնյա այդպիսի վայրում նրանք առաջին անգամն էին լինում:

— Դժվար է, չէ՞, քեռի,— Միշա Մկրտչյանին դիմեց Անահիտը:

— Հեշտ չէ,— պատասխանեց հորատողը,— բայց երբ այս սև, մութ խոռոչները մի քանի ամիս հետո գեղեցիկ պալատների վերածվեն, սիրով կհիշենք հաղթահարման դժվարությունները:

Ջոկատի պիոներները իմացան, որ այդ տեղամասում գրունտային ջրերի կուտակումից փլուզում է տեղի ունեցել: Եվ հորատողներին օգնության են հասել փականագործները, մոնտաժողները ու բետոնագործները: Համերաշխ աշխատանքով վթարը կանխվել է, ու չի խախտվել աշխատանքային ռիթմը:

Հիմա այդ հատվածում բանվորները կատարում են կայանի միջին և աջ թունելների հորատանցումը, վերամոնտաժում ձախ թունելի օղակները: Պիոներները գրի առան նրանց պատմածները, լուսանկարվեցին՝ այդ ամենը ջոկատի պատի թերթում օգտագործելու համար:

Պիոներները մետրոշինարարներին հանձնեցին իրենց նվերը և խոստացան նորից այցի գնալ:

ԾԱՎԱՐՇ ԽԱՉԱՏՐՅԱՆ




ՌԱՖԱՅԵԼ ԻՇԽԱՆՅԱՆ
Բանասիրական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

ԶՐՈՒՅՑ ԱՌԱՋԻՆ

# Թվականներ, աղբյուրներ

Մի ժողովրդի պատմությունը նրա կենսագրությունն է. նախ ծնունդը՝ որտեղ է ծնվել, երբ, ապա և ամբողջ կյանքը՝ ինչ պայմաններում է ընթացել, ինչ դժվարություններ է այդ ժողովուրդը հաղթահարել, մշակույթի ինչ արժեքներ է ստեղծել, ինչ ավանդ է մուծել համաշխարհային մտքի ու մշակույթի գանձարանը և այլն: Կան հին ժողովուրդներ էլ, որոնք մահացել են, վաղուց այլևս գոյություն չունեն. կնշանակի նրանց պատմությունը տևել է ծննդից մինչև մահ:

Հայ ժողովուրդը աշխարհի ամենահին ժողովուրդներից է: Նրա հնադարյան հարևանների մի մասն այժմ էլ կա, ապրում է, իր լեզվով խոսում, գրում, մշակութային նոր արժեքներ ստեղծում. դրանցից են՝ վրաց ժողովուրդը, օսերը, հույները, արաբները, պարսիկները և այլն: Իսկ հայերի հնագույն հարևան ժողովուրդների մի մասն այլևս չկա: Նրանց լեզվով վաղուց է, որ ոչ ոք չի խոսում, նրանց մշակույթը չի զարգանում. դրանցից են, օրինակ, շումերները, ասուրաբաբելացիները (աքքադացիները), խեթերը և այլն:

Հին ու հնագույն ժողովուրդների պատմությունը լավ հասկանալու համար կարևոր է ճիշտ պատկերացնել պատմության թվականությունները և ժամանակագրությունը: Այժմ 1985 թվականն է: Սա նշանակում է, որ մեկ թվականից սկսած անցել է 1985 տարի: Մեկ թվականը համարվում է Քրիստոսի ծննդյան տարին: Այդ թվականից մինչև մեր ժամանակն ընկած տարիների հաշիվը կոչվում է մեր թվականություն, դրանից հետո կատարված դեպքերը համարվում են մեր թվականության այս կամ այն թվականին կատարված:

Իսկ նախքան մեկ թվականը, տարբեր դարերում, տարբեր տարիների դեպքերը համարվում են մեր թվականությունից առաջ կատարված: Սա հատկապես կարևոր է հիշել: Մեր թվականությունից առաջ բառերը գրվում են կրճատ մ. թ. ա.: Այդպես, այս տառերը նշանակում են՝ 1 թվականից առաջ: Օրինակ, եթե կարդում ենք «մ. թ. ա. 95 թ. Տիգրան Մեծը դարձավ Հայաստանի թագավոր», կնշանակի այս դեպքը կատարվել է 1 թվականից 95 տարի առաջ: Կամ՝ եթե կարդում ենք «մ. թ. ա. 8-րդ դարում կատարվել է Մեծ Հայքի առաջին միավորումը», կը-

նշանակի մեկ թվականից առաջ պետք է հաշվենք 8 հարյուր տարի, և միավորումը կատարվել է 8-րդ հարյուրամյակի մեջ: Իսկ եթե կարդում ենք՝ մ. թ. ա. 3-րդ հազարամյակ, նշանակի 1 թվականից հաշվում ենք 3 հազար տարի, և հենց 3-րդ հազարամյակի մասին է գրվածը:

Իմանալու համար, թե մ. թ. ա. ընկած որևէ դարից կամ թվականից մինչև մեր օրերն ինչքան ժամանակ է անցել, մ. թ. ա. եղած թվականին գումարում ենք այսօրվա մեր թիվը՝ 1985: Օրինակ, մ. թ. ա. 95 թվականը եղել է մեզնից 2080 տարի առաջ (95+1985=2080):

Պետք է հիշել նաև, որ միայն մ. թ. ա.-ով նշվում են 1 թվականից առաջ եղած տարիները, դարերը, հազարամյակները, իսկ մեր թվականից հետո եկող տարիները որևէ ձևով չեն նշվում: Օրինակ, չենք գրում մ. թ. (մեր թվականության) 1920 թվականին կամ մ. թ. 985 թվականին: Դրա կարիքը չկա, եթե մ. թ. ա. տառերը չկան, նշանակի խոսքը մեր թվականության մասին է:

Պետք է կարողանալ նաև ճիշտ տարբերել դարերը: Օրինակ, մեր դարը 20-րդն է, այն սկսվել է 1901 թվականից և կվերջանա 2000-ին: Այսինքն՝ 19 թվով սկսվող քառանիշ թվականները 20-րդ դարի մեջ են մտնում (չհաշված 1900-ը, որը 19-րդ դարի մեջ է): Նույն կերպ էլ 18-ով սկսվողները՝ 1801, 1858, 1890 և այլն 19-րդ դարի մեջ են մտնում: Կամ՝ 10-ով սկսվողները (չհաշված 1000-ը), 11-րդ դարի մեջ են՝ 1021, 1045 և այլն: Եռանիշ թվականների դեպքում՝ 9-ով սկսվող թվականները 10-րդ դարի մեջ են մտնում. օրինակ 951, 969 և այլն: Կամ 3-ով սկսվող թվականները 4-րդ դարի մեջ են մտնում: Օրինակ, կարդում ենք, որ 387 թվականին Հայաստանը երկու մասի է բաժանվել. նշանակում է, որ դեպքը եղել է 4-րդ դարում: Նարեկացին ծնվել է 951 թվականին, ուրեմն՝ 10-րդ դարում է ծնվել և այլն:

Այժմ պատմական աղբյուրների մասին: Մի ժողովրդի պատմությունը գրվում է պատմական աղբյուրների հիման վրա: Այդ աղբյուրներն են՝ տվյալ ժողովրդի լեզուն, այդ ժողովրդի մասին պատմող գրավոր հուշարձանները՝ արձանագրություններ, հին մատյաններ և այլն, հնագիտական նյութերը, տվյալ ժողովրդի ժողովրդական ստեղծագործությունը, հնում գործածված դրամները և այլն:

Հայ ժողովրդի պատմության աղբյուրներից առաջինը հայոց լեզուն է: Հիշենք Հովհաննես Թումանյանի խոսքերը. «Լեզուն է ամեն մի ժողովրդի ազգային գոյության ու էության ամենախոշոր փաստը, ինքնուրույնության ու հեռավոր անցյալի կախարդական բանալին, հոգեկան կարողությունների ամենաճոխ գանձարանը, հոգին ու հոգեբանությունը»:

Այսպես, ուրեմն. մեր լեզուն հայ ժողովրդի հեռավոր անցյալի կախարդական բանալին է: Մենք դեռ կտեսնենք, որ հայերի ծագում նշանակում է հայոց լեզվի ծագում, և երբ որոշում ենք, թե երբ ու որտեղ է ծնվել հայոց լեզուն, դրանով որոշում ենք, թե երբ և որտեղ են ծնվել այդ լեզվով խոսողները՝ հայերը: Հայոց լեզուն իր բառապաշարով մեզ վկայություններ է տալիս նաև իր անցած պատմական ուղու մասին: Օրինակ, հարևան հին լեզուներից հայերենի մեջ անցած և հայերենից այդ լեզուների մեջ թափանցած բառերը մեզ պատմում են հնագույն ու հին հայերի բնակության վայրերի, այդ ժողովուրդների հետ նրանց ունեցած հարևանության մասին:

Հայ ժողովրդի պատմության մյուս կարևոր աղբյուրը տարբեր լեզուներով գրված արձանագրություններն են՝ պապիրուսները, գրքերը: Դրանց մեջ էական են հայերեն գրված հին մատյանները, որոնք բոլորը միասին կոչվում են հայ մատենագրություն: Սրա մեջ ամենից առաջ մտնում են հայ հին պատմիչների գրքերը: Հայ ամենահին պատմիչները, որոնց գրքերը հասել են մեզ, ապրել են 4-րդ և 5-րդ դարերում: Դրանցից Ագաթանգեղոսը և Փավստոս Բուզանդը, ըստ տեղեկությունների ապրել են և իրենց պատմությունները գրել 4-րդ դարում: Իսկ Կորյունը, Եղիշեն, Ղազար Փարպեցին, Մովսես Խորենացին ապրել ու ստեղծագործել են 5-րդ դարում: Հետագա դարերում նույնպես ապրել և գրել են շատ հայ պատմիչներ, որոնցից են Սեբեոսը, Մովսես Կաղանկատվացին, Ղևոնդը, Հովհաննես Դրասխանակերտցին, Թովմա Արծրունին, Ստեփանոս Ասողիկը, Արիստակես Լաստիվերցին, Սամվել Անեցին, Մխիթար Անեցին, Կիրակոս Գանձակեցին և շատ ուրիշներ:

Հայ պատմիչների գրածները լրացնում են հայերեն քարագիր արձանագրությունները, հին ձեռագրերի հիշատակարանները և այլն:

Հայոց պատմության ամենահին ժամանակների մասին առաջինը գրել է Մովսես Խորենացին: Նա աշխատեց գրել հայոց ամբողջական պատմություն՝ հայերի ծագման ժամանակաշրջանից մինչև իր օրերը՝ 5-րդ դարը: Խորենացու գրած «Հայոց պատմությունը» այսօր մեզ վստահելի շատ տվյալներ է տալիս հայ ժողովրդի պատմության տարբեր շրջանների մասին: Սակայն Խորենացու պատմությունը հաճախ էլ անհրաժեշտ է լինում լրացնել ավելի հին աղբյուրների տվյալներով: Պարզ է, որ Խորենացու նկարագրած դեպքերը, որքան մոտ են նրա ապրած ժամանակաշրջանին, այնքան ավելի արժանահավատ



Հայկական ցեղերի տարածումը մ. թ. ա. 3-րդ հազարամյակի վերջում:

են: Իսկ իրենից 1000, 2000 և ավելի տարիներ առաջ կատարված դեպքերի մասին գրելիս՝ Խորենացին կարող էր սխալվել, քանի որ ինքն էլ օգտվել էր բանավոր խոսքից և այլ աղբյուրներից, որոնցում նույնպես անճշտություններ են եղել: Այդպիսով, վստահելով Խորենացուն և մյուս հայ պատմիչներին, նրանց գրածներն անհրաժեշտ է լրացնել ու ճշտել ավելի հին ժամանակներում գրված արձանագրությունների և այլ երկների մեջ հայտնված փաստերով:

Ահա, հայ ժողովրդի պատմության գրավոր աղբյուրների մեջ հաջորդը և շատ կարևորը հնադարյան գրավոր հուշարձաններն են: Մարդիկ սկսել են գրել մ. թ. ա. 4-րդ հազարամյակի վերջերում, մեզնից ավելի քան 5000 տարի առաջ: Գրում էին քարերի, կավե սալիկների վրա կամ բույսերից, ծառի կեղևից, տերևներից թղթի պես բան էին պատրաստում ու դրանց վրա գրում: Տարածված էր պապիրուսը, որը պատրաստում էին լոտոս կոչված ջրային բույսից, և շատ նման էր թղթին: Եղջերուների, հորթերի կաշվից էլ էին «թուղթ» պատրաստում ու գրում վրան. դա էլ կոչվում է մագաղաթ:

Հնագույն ժամանակներից պահպանվել են տարբեր ժողովուրդների ստեղծած գրավոր շատ հուշարձաններ, որոնց մեջ տեղեկություններ կան նաև հին ու հնագույն հայերի ու Հայաստանի մասին: Հայերի մասին այդպիսի վկայություններ կան պահպանված մ. թ. ա. 3-րդ հազարամյակից սկսած: Այդ գրավոր հուշարձանները, հատկապես փորագիր արձանագրությունները վստահելի տեղեկություններ են տալիս, քանի որ գրվել են այն ժամանակ, երբ տեղի են ունեցել դեպքերը: Ուստի և նրանց հաղորդած տեղեկությունները ու հայ պատմիչների գրածը համեմատում ենք իրար հետ, ժամանակները ու դեպքերը ճշտում և գրում հայ ժողովրդի պատմության հնագույն ժամանակների, ինչպես և այլ ժամանակաշրջանների մասին: Դրան մեծապես օգնում են նաև հին հույն, հռոմեացի (լատին), ասորի և այլ ազգերի պատկանող պատմիչների գրքերը, որոնցում նույնպես շատ բան կա ասված հայերի ու Հայաստանի մասին:

Հայ ժողովրդի պատմության մի այլ աղբյուր է ժողովրդական բանահյուսությունը: Օրինակ, մենք դեռ կտեսնենք, որ «Արա Գեղեցիկի և Շամիրամի» ժողովրդական առասպելը իր մեջ պարունակում է պատմական եղած դեպքերի արձագանք: Իսկ մեր «Սասունցի Դավիթ» դյուցազնավեպը կարևոր տեղեկություններ է տալիս մ. թ. ա. 7-րդ դարում Հայաստանի և Ասորեստանի հարաբերությունների, ինչպես և 7—9-րդ դարերում հայերի ու արաբների հարաբերությունների մասին:

Հայ ժողովրդի պատմության շատ կարևոր աղբյուր է հնագիտությունը. հնագետները գետնի տակից հանում են հին ժամանակների բնակավայրեր, պալատներ, տաճարներ, հնադարյան զանազան իրեր՝ խեցեղեն, դրամներ, զարդեր, զենքեր և այլն: Հայաստանի հողի տակից հնագետները գտել են մեզանից 4—5 հազար տարի առաջ ապրող հայերի գանգեր, տարբեր ժամանակների կճուճ-



ներ, կարասներ, զարդեղեն, հայոց Արաբատյան թագավորության բերդաքաղաքներ, հին Հայաստանում տարբեր ժամանակ, զանազան լեզուներով գրված արձանագրություններ, դրոշմված դրամներ և այլն:

Պատմական բոլոր աղբյուրները տալիս են փաստեր հայ ժողովրդի պատմության վերաբերյալ: Բայց մի ժողովրդի պատմությունը գրելու համար փաստերը բավական չեն: Անհրաժեշտ է պատմաբանի գիտելիքներ, պատմական ժամանակների զգացողություն և տրամաբանություն: Հըմուտ պատմաբանն է, որ խոսեցնում է փաստերը, ինքն էլ հասկանում նրանց լեզուն, բովանդակությունը: Օրինակ, Երևանի մոտ գտնվող Կարմիր բլուրում հողի տակից հայտնաբերվեց մ. թ. ա. 7-րդ դարում կառուցված բերդաքաղաք, որի նկուղներում գտնվեց գարեջուր պատրաստելու սարք: Պատմաբանը գիտի, որ մ. թ. ա. 5-րդ դարում հույն Քսենոֆոնը գրել է, որ Հայաստանում ինքը գարեջուր է խմել: Այդպես պարզվում է, որ դեռ Քսենոֆոնից առաջ էլ հայերը գարեջուր էին պատրաստում:

Այսպիսով, մեր օրերում որևէ ժողովրդի պատմությունը ճիշտ գրելու համար անհրաժեշտ են փաստեր և տրամաբանություն: Այս երկու սյուների վրա էլ հենվում է հայ ժողովրդի պատմությունը. դրանք երկուսն էլ ամուր պետք է լինեն, որ նրանց վրա հենված պատմական աշխատությունը ճշգրիտ, արժանահավատ լինի:

(շարունակելի)

Նկ. ՄԻՀՐԱՆ ՔԵՉՕՂԼՅԱՆԻ

ՀԱՅԿ ԽԱՉԱՏՐՅԱՆ

# ՏԵՂԱՆՈՒՆԸ ՀՈՒՇԱՐՁԱՆ Է



Տեղանունը հուշարձան է, սրբազան կոթող:
Հայկական տեղանունը հայ ժողովրդի պատմության, նրա կենսագրության մի մասն է: Տեղանունների մեջ հաճախ խնամքով պահվում են ժողովրդին հոգեհարազատ, թանկ հիշատակներ, մեր հերոսական պատմության շքեղ դրվագներ, հայերենի հնագույն շերտեր:
Արձակագիր Հայկ Խաչատրյանը տարիներ շարունակ հավաքել է հայկական տեղանունների հետ կապված զրույցներն ու ավանդությունները: Ամսագրի այս համարից ձեր ուշադրությանն ենք ներկայացնում գրողի ստեղծած պատումաշարը՝ նվիրված հայկական տեղանուններին:

## ԱՅԳԻՆԵՐՈՎ ԼԻ ԱԳՈՒԼԵՔ ԱԳՈՒԼԻՍ

Հին զրույցն ասում է, թե հայոց Գողթն գավառի Ագուլիս քաղաքի պորտը կապել է Նոյ նահապետը: Մեծ ջրհեղեղից հետո, իբրև թե Նոյն իջել է Մասիսի կատարից, նախ և առաջ հիմնադրել Նախիջևան քաղաքը, ապա առաջ շարժվելով, հասել Գողթն: Այստեղ կանգնել է մի բլրի վրա և զանազան պտուղների մի բուռ հունդեր շպրտել ձորահովտով մեկ:
Հետո Նոյն իր ճանապարհը շարունակել է դեպի Կապուտան ծովակը: Մի քանի տարի անց իր տոհմանդամներից մեկին ուղարկել է Գողթն ու ասել.
— Գնա, տես ի՞նչ դարձան իմ ցանած պտղասերմերը:
Բանբերը եկել է Գողթն և տեսել, որ Նոյի հունդերը ծլարձակել են և ձորահովիտը լցրել փարթամ այգիներով:
Վերադարձել է և հայտնել, որ երբեմնի ամայի հովիտը այժմ այգիներով լիքն է:
Ասում են՝ Նոյի ժամանակներից էլ այդ վայրը կոչվել է Այգիներով լի: Հետագա-

յում անունը հնչյունափոխվել է, դարձել Ագուլիք, ապա՝ Ագուլիս:

## ԱԶԳ

Արևմտյան Հայաստանի Սեբաստիա քաղաքի հարավ-արևելյան կողմում Ազդ անունով մի գյուղ է եղել: Ամենքդ էլ գիտեք, որ ազդ նշանակում է լուր: Մեր հըները ասում էին՝ ազդ առնել, այսինքն՝ լուր տալ, իմաց տալ, ազդարար՝ այսինքն լուր տվող: Իսկ ինչպե՞ս եղավ, որ գյուղն ստացավ Ազդ անունը:

Դա եղել է հազար տարի առաջ: Թըշնամին հանկարծակի գյուղ է ներխուժել և սկսել կողոպուտը: Հակառակի պես տոնական օր է եղել, ինչպես այդ, այնպես էլ հարևան գյուղերի այրերը զինավարժական մրցությունների են մեկնած եղել Նիզակ բարձրիկ սարը, որը շատ էլ հեռու չէր գյուղից: Բայց ինչպես իմաց տալ նրանց: Մինչև մեկը Նիզակ սար հասներ ու հետը զորական ուժ բերեր, շատ ժամանակ կանցներ: Իսկ մինչ այդ ասպատակողները ձորահովտի գյուղերում քարը քարի վրա չէին թողնի: Եվ ահա գյուղի կանայք գտնում են բոթն իրենց այրերին իմաց տալու հնարը: Նրանք սկսում են կրակ տալ գյուղի խոտի դեզերը: Հրոսակապետին թվում է, թե դա իր զորականների արածն է: Ծուխով դեզերը դառնում են հրե սյուներ: Դա նկատում են Նիզակ սարի վրա գտնվող տղամարդիկ և շտապում օգնության հասնել յուրայիններին:

Ահա թե ինչու է գյուղն Ազդ կոչվել:

## ԱԺԴԱՀԱԿ

Այս զրույցի տուտը մնացել է յոթ անգամ յոթ դարի թիկունքում: Հարավի անապատներից Հայաստան է մտել Աժդահակ կոչվող եռագլուխ մի վիշապ օձ, որը չէր հագենում ջրից: Ուր հասնում էր՝ ցամաքեցնում էր գետ ու աղբյուր, լիճ ու առու: Հայոց աշխարհի հյութը այսպես ծըծելով, վիշապը շարժվում է դեպի Սևանա լիճ: Աժդահակի համար Սևանն ի՞նչ էր որ՝ մի ամսվա ծարավը հազիվ հագեցներ:

Բայց հայոց աստվածների հայր Արամազդը չի թողնում, որ ամենակուլ վիշապը մոտենա Սևանին: Երբ Աժդահակը հասնում է Գեղամա լեռներին, Արամազդը ուժգին փնչացնում է և վիշապի չորս բոլորքը ծածկում ձյունով: Մինչ այդ ձյուն չտեսած Հայոց աշխարհում սաստիկ ցրտեր են ընկնում, Վիշապ օձը խոլաբար փշշում է, բայց չի կարողանում սողալ ձյան վրա, շունչը փչում է:

Հենց այդ ժամանակվանից էլ Գեղամա լեռնաշղթայի ամենաբարձր գագաթը, որտեղ իր շունչը փչեց վիշապը, կոչվեց Աժդահակ: Այդ լեռը գտնվում է Աբովյանի և Կամոյի շրջանների սահմանագըլխին:

## ՎԱՂԱՐՇԱԿԵՐՏ ՎԱՂԱՇԿԵՐՏ ԱԼԱՇԿԵՐՏ

Հայոց աշխարհի ամենաբուրումնավետ ծաղիկներն աճում են Բագրևանդ գավառում: Զրույցն ասում է, թե այդ ծաղիկների զգլխիչ բուրմունքը ըմբոշխնում էին հայոց հեթանոս աստվածները, որոնք օր ու մեջ հայտնվում էին Բագրևանդում:

Երկրորդ դարում Հայոց Վաղարշակ թագավորը փորձում է նմանվել աստվածներին և Բագրևանդում կառուցում իր ոստաններից մեկը, որ նրա անունով կոչվեց Վաղարշակերտ:

Բայց մարդիկ են գլխից են սիրել երկարը կարճացնել: Նրանք Վաղարշակերտը սկզբում դարձրին Վաղաշկերտ, հետո էլ մեղմեցին այս Վաղաշկերտը ու վերջնականապես կոչեցին Ալաշկերտ: Այդպես կոչվեց ոչ միայն քաղաքը, այլև Բագրեվանդի ամբողջ դաշտը:

**ԳԱՌՆԻԿ ՄԿՐՏՉՅԱՆ**

# Սովորեցնում եմ, նաև սովորում

## 8. «ԵՍ ՁԵԶ ԱՍՈՒՄ ԵՄ՝ ԿԳԱ ՈԳՈՒ ՍՈՎ...»

Թելադրում էի ամառային արձակուրդներին հանձնարարելի գրքերի ցուցակը: Հանկարծ լռության մեջ լսվեց Արայի ձայնը.

— Ցուցակը կրճատեք:

— Ինչու՞:

— Որովհետև արձակուրդները հանգստանալու համար են, իսկ դուք մեզ ստիպում եք կարդալ ու կարդալ: Հետո էլ ասում եք, թե՝ լավ հանգիստը կօգնի լավ սովորելուն:

Դժվար չէր ասել. «Դու պարտավո՞ր ես, դու պիտի անե՞ս, դու պետք է սովորե՞ս», բայց արդյունքը ինձ կասկածելի թվաց: Այդ փոքրիկ «ապստամբությունը» նախապատրաստված էր ու կողմնակիցներ ուներ, չէի կասկածում:

Հիշեցի Իսահակյանին և ուղղակի, ճակատ առ ճակատ պատասխանելու փոխարեն արտասանեցի. «Ես ձեզ ասում եմ՝ կգա ոգու սով, և դուք կքաղցեք ճոխ սեղանի մոտ...»: Հետո բացատրեցի, թե ինչու էր բանաստեղծը այդքան անհանգստանում, թե որքան կարևոր են գրականությունն ու արվեստը: Ասացի, որ նրանց առաքելությունը, վերջին հաշվով, մեկն է. պահպանել ու պատվաստել մարդկային բարձր հատկանիշները, սերմանել բարին, մաքուրը, վեհը: Կրկնեցի հայտնին. որ առանց այդ ամենի հնարավոր չէ սիրել մորը, հայրենիքը, ընկերոջը... Աշխատում էի, որ ասածս չընդունվի որպես հավուր պատշաճի ելույթ: Փորձում էի ոչ թե խրատական, այլ մտերմիկ տոնով խոսել: Ցանկանում էի, որ բանաստեղծությունը կարդան ո՛չ որպես պարտականություն, այլ ներքին մղումով, սիրով:

Ցուցակը թելադրեցի: Գրիչները շարժվում էին: Հավանաբար՝ նկարդան:

## 9. ՈՒՍՈՒՑԻՉԸ ԿԱՄԵՑԱՎ ԾՆՈՂԻՆ ՈՒՐԱԽԱՑՆԵԼ

...Արտյոմից ես գոհ էի: Եթե առաջ շատ էր բացակայում, դասերից փախչում, այժմ արդեն դպրոց հաճախում էր կանոնավոր: Եթե նախկինում նրան տեսնում էի շենքերի թաքստոց-անկյուններում, որտեղ ձեռքն են վերցնում առաջին ծխախոտը, այժմ չէի հանդիպում: Սկսել էր սովորել: Մի կերպ «երեքներին» փոխարինելու էին եկել նույնիսկ լիարժեք «չորսերը»:

Բայց ներքուստ անհանգիստ էի, որովհետև արդեն ամառվա շեմին էինք ու բակը, փողոցը, գիտեի՝ շատ էին հրապուրիչ: Դժվարությամբ ձեռք բերվածը հնարավոր էր հեշտությամբ կորցնել:

Արտյոմին ասացի, որ հայրիկին դպրոց կանչի, մտածելով, որ միասին ավելի լավ արդյունքի կարող էինք հասնել՝ Արտյոմին պահել մշտական հսկողության տակ: Մտադրություն չունեի հորը բողոք ներկայացնել: Ճիշտ հակառակը. որոշել էի հոր ներկայությամբ գովել տղային, խրախուսել: Ասացի, որ հայրիկին կանչի, բայց չասացի, թե ինչու, չբացատրեցի, շատ էի շտապում:

Արտյոմը մտածել էր, որ դա հերթական կանչերից է, որոնք հայտնի ավարտ են ունենում: Երկու օր դասի չեկավ: Հետո պիտի իմանայի, որ առավոտները սովորականի պես պայուսակով տնից դուրս է եկել ու թրևել մինչև ժամը երկուսը՝ դասերի ավարտը: Տուն շատ զանգահարեցի, բայց հեռախոսը չէր պատասխանում: Հետո պիտի իմանայի, որ լարերը կտրել է: Վախը, նաև չգնահատվելու, հիասթափության կանոնները գործել էին անխափան: Եվ այդ ամենը թյուրիմացության հետևանքով:

Երրորդ օրը տեղի ունեցավ երեքիս հանդիպումը՝ իմ, Արտյոմի և հոր: Ամեն ինչ պարզվեց, հարթվեց:

Կուզենայի, որ բոլոր աշակերտները մի բան լավ հիշեն. ծնողին դպրոց չեն հրավիրում միայն երեխայից գանգատվելու համար: Հարկավոր է լինել ավելի ինքնավստահ, և եթե նույնիսկ ինչ-ինչ թերացումներ



Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

էլ եղել են, դրանց համար լինել պատասխանատու: Հիշեք. ուսուցիչը ցանկանում է նան ծնողին ուրախացնել:

## 10. ԱՐՔԱՅԻՑ ԱՐՔԱՅԻ ՀՐԱՄԱՆԸ...

Վեցերորդ «գ» դասարանում Լևոնից ուժեղը չկա: Եվ դա ամենևին էլ զարմանալի չէ. նա զբաղվում է ծանրամարտով: Լևոնը բրնավորության շատ լավ գըծեր ունի: Կարինեն, որ նըրան հարևան է, պատմում էր, թե շենքի բնակիչներին ինչպես է օգնել, նույնիսկ մեծերին հավասար աշխատել: Միայն թե... Լևոնը շատ է սիրում դասարանում իշխել.

— Գուրգեն, պայուսակս կտանես կենսաբանության կաբինետ, ես բուֆետ եմ գնում:

Կամ՝

— Կարեն, պարապմունք ունեմ, ժամանակ չկա, իմ փոխարեն դու կհերթապահես, դասամատյանը դու կմաքրես:

Ո՞վ կարող է հակաճակել, ինքը դասարանում ամենաուժեղն է:

Լևոնի կուրքը Յուրի Վարդանյանն է, շատ է ցանկանում նրան նմանվել: Բայց նա մոռացել էր, և դասա-



րանական ժողովում ստիպված էինք հիշեցնել. փառապանծ ծանրամարտիկը, այո՛, ուժեղ է, և ուժեղին վայել՝ համեստ, ընկերասեր, զգայուն և ուշադիր շրջապատի հանդեպ:

Տղամարդկային ուժը և ասպետությունը, ընկերասիրությունը, նրբանկատությունը պետք է միաձուլյ լինեն:

Նմանվե՞լ եք ուզում Յուրի Վարդանյանին, նմանվեք համակողմանի:

## 11. ՏԻԿՆԻԿԸ ԴԱՍ Է ՍՈՎՈՐԵՑՆՈՒՄ...

Երբ մտա չորրորդցիների դասամատյանը, Լալան դեռ թնկթնկում էր:

— Ի՞նչ է պատահել:

Հիչ հետո պատճառը պարզվեց: Դասամիջոցին, դասը կրկնելիս, Լալային հարցրել են, թե ինչպես է կարողացել այդքան դըժվար ու երկար դասը գրեթե անգիր անել: Նա էլ ասել է, որ իր ամենասիրած, մանկապարտեզի ժամանակվանից մնացած տիկնիկին նստեցնում է ու նրան իր սովորած դասերը պատմում երկու-երեք անգամ: Երեխաները ծիծաղել են.

— Գիտնական տիկնիկ ունես:

— Գերազանցիկ կդառնա:

— Հեր դպրոց, կդառնա մեր դասարանի քսանութերորդ աշակերտը:

...Ակամայից ես էլ ծըպտացի Լալայի մեթոդի վըրա: Բայց գիտե՞ք, եկեք պահենք մեր մանկապարտեզի տարիներից մնացած որևէ, ցանկացած խաղալիք: Դրանք (ո՛չ՝ նրանք) ինչ-որ մաքուր-մաքուր բան են խորհրդանշում: Գիտեմ, հետո նրանց հետ զրուցելու, նորից մերձենալու ցանկություն կունենաք:

ԲԱԳՐԱՏ ՈՒԼՈՒԲԱԲՅԱՆ

# ՄԱՏՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀԵՏՔԵՐՈՎ



Տրտու-Թարթառ գետն սկիզբ է առնում Սևանա լճի արևելյանափերից և հոսում է մինչև հին Ուտիքի դաշտը (այժմյան Բարդա քաղաքի մոտերքը): Հին ժամանակներում Թարթառը թափվելիս է եղել Կուր գետի մեջ: Հիմա այն սպառվում է դաշտի ոռոգման սիստեմով: Բայց մինչև սպառվելն էլ, մոտ 140—150 կմ ճանապարհ է անցնում: Գետի ափերը զարդարված են Արցախի հայ իշխանական ձեռնաշեն հրաշալիքներով: Գետի վերին ակունքներում, այնտեղ, ուր հոչակավոր ջերմուկներն են, կանգնած է եղել իշխանանիստ Ծաղ-Ծող-Ջողը: Նրա մոտ, գետի աջափնյա սարի վրա, երբեմնի անառիկ Հանդաբերդի ավերակներն են: Այստեղ, Թարթառի փորած խորաձորում հիմա էլ դեռևս կանգնում են Գրիգոր Լուսավորիչ եկեղեցու պատերը: Ավելի ցած, գետի ձախ ափին, Դադի վանքի ճարտարապետական համալիրն է՝ հայտնի արդեն 7-րդ դարից: Այստեղ է այն խուցը, որտեղ Հաթերքի Վախթանգ իշխանի հովանավորությամբ Մխիթար Գոշը 12-րդ դարում գրել է «Հայոց դատաստանագիրքը»: Այստեղ են հաջորդ դարի մեր հանճարեղ քարգործ վարպետ Պողոսի կերտած երկու խաչքարերը, որոնց եռաշերտ քանդակազարդերը բացառիկ են իրենց արվեստով և կարող են համեմատվել միայն նույն Պողոս վարպետի այն խաչքարերի հետ, որոնք գտնվում են Գոշավանքում:



Դադիվանքից ավելի վար, գետի աջ ափին, թավ անտառի մեջ խոյացած բլրի վրա կանգնել է մի այլ վանական համալիր՝ Խադավանքը (ժողովրդական արտասանությամբ՝ Խաթրավանք): Այս վանքը շրջափակված է դարավոր ծառերով, նույնիսկ նրա կտուրներին բուսել, տարածվել են տասնյակ ծառեր ու թփեր, որոնց առկայությամբ շինությունները լրիվ չեն երևում իրենց ճարտարապետա-

կաև ողջ փայլով: Սակայն վանքն ունի մի ուրիշ առանձնահատկություն, որ ի սկզբանե նրա մեծագույն արժանիքն է եղել: 12-րդ դարում սելջուկ թուրքերը հիմնահատակ ավերել էին գավառի հոգևոր կենտրոնները: Եվ 1204 թ. այս վանքի գլխավոր եկեղեցին կառուցելիս շինարարները նրա պատերի մեջ են դրել քանդված հոգևոր կենտրոններից առնված հին խաչեր ու արձանագիր քարեր, զարդանախշեր ու պատկերաքանդակներ, և, այսպիսով, նոր տաճարը դարձել է յուրահատուկ թանգարան, որի մեջ պահպանվում են առավել վաղ ժամանակների ճարտարապետական հուշարձանների մասունքները: Վերջապես, այստեղ է գտնըվել Խադավանքի առաջնորդ Հովհաննեսի այն արձանագրությունը, որը պատմում է, թե ինչպես նա գրավոր մատյաններ հավաքեց և Խադավանքում մատենադարան հիմնեց ապագա սերունդների համար: Այդ արձանագրությունը՝ մի փոքրիկ սալքարի վրա, այժմ գտնվում է Երևանի մաշտոցյան Մատենադարանի ցուցասրահում: Այս նույն Հովհաննեսը հետագայում առաջնորդ է եղել Հաղպատում և այնտեղ ևս կառուցել է անզուգական մեծ գավիթը, այլևայլ շենքեր և զարկ տըվել գրչության ու մանրանկարչության արվեստին:

Խադավանքից ներքև, դեպի հյուսիսարևելք Հաթերք իշխանանիստն է: Միջնադարյան այս ավանում նստում էին Խաչենի միջնաշխարհի իշխանները, որոնք իրենց տոհմը պսակել են սելջուկ թուրքերի դեմ տարած հաղթանակներով:

Իսկ հետո Տրտու-Թարթառը տառացիորեն հոսում է հուշարձանների շարքի միջով: Այստեղ է Երիցմանկունք վանքը, Ջրաբերդ ամրոցը, Հուռեկա վանքը, Գյուլիստան բերդը՝ մեկը մյուսից հին ու նշանավոր: Ջրաբերդն այն հնամենի ու անառիկ ամրությունն է Թարթառի ու նրա վտակ Թրղիի միացման կետում բարձրացած ժայռի վրա, որին ապավինած արցախցիները հերոսական մարտերով պաշտպանվել են խազարներից դեռևս 6—7-րդ դարերում: Իսկ Գյուլիստանը, թեկուզ և հայտնի է վաղ միջնադարից, մելիքական շրջանում (16—18-րդ դդ.) դարձավ թուրք ու պարսիկ բռնակալների դեմ մղված պատերազմների արծվաբույն և 1813 թ. էլ նշանավորվեց նրանով, որ այստեղ կնքվեց Ռուսաստանի ու Պարս-



Լուսանկարները՝ ՄԱՐՏԻՆ ՇԱՀԲԱԶՅԱՆԻ

կաստանի միջև հաստատված խաղաղության դաշնագիրը:

Բայց և այնպես, Լեռնային Ղարաբաղի պատմաճարտարապետական հուշարձանների թագն ու պսակը Գանձասարի վանքն է: Կանգնած է այն Խաչենագետի ձախ ափին, անտառածածկ ու բարձր մի լեռան վրա, որ կոչվում է Գանձասար: Հայտնի է 10-րդ դարից: Ունեցել է հռչակավոր դպրոց և գրչատուն:

13-րդ դարից սկսած այստեղ են նստել հյուսիս-արևելյան Հայաստանի հոգևոր առաջնորդները, որոնք հայտնի են Հայաղվանքի կամ Գանձասարի կաթողիկոսներ տիտղոսով և ուշմիջնադարյան շրջանում գլխավորում էին հայոց ազատագրության գործն ու հայ-ռուսական քաղաքական փոխհարաբերությունները: Հայտնի է, օրինակ, Գանձասարի Պետրոս կաթողիկոսի նամակը ռուսաց թագավոր Ալեքսեյ Միխայլովիչին (1672 թ.), որով խնդրվում էր օգնել բռնակալների ճիրաններում տառապող հայոց ազգին: Իսկ հետո գալիս են Ղարաբաղի մելիքների ու հոգևոր առաջնորդների նամակները, կազմակերպած բանագնացությունները, որոնք իրենց հերթին նպաստեցին, որ հյուսիսի մեծ բարեկամը գա օգնության և մեր ժողովրդի արևելյան հատվածը փրկվի պարսից ու թուրքաց տիրապետությունից:

Գանձասարը հայտնի է ոչ միայն հայոց ազատագրությանը մատուցած իր ծառայություններով: Նրա ճարտարապետական կերպարը վաղուց գրավել է հետազոտողների ուշադրությունը: Այժմ կանգուն տաճարը, գավթի հետ կառուցված լինելով 13-րդ դարի առաջին կեսին (1216—1238 թթ.), իր մեջ է առել այս հայաշխարհի մշակույթի բազմադարյան նվաճումները և դարձել մեր ժողովրդի ճարտարապետական արվեստի ակնառու կոթողներից մեկը: Ֆրանսիացի խոշոր արվեստաբան, ակադեմիկոս Շառլ Դիլի կարծիքով՝ Գանձասարը մեկն է այն հինգ առաջնակարգ ճարտարապետական կառույցներից, որ հայ ժողովուրդը մուծել է համաշխարհային ճարտարապետության գանձարանը: Իսկ սովետական ականավոր գիտնական Անատոլի Յակոբսոնը գտնում էր, որ Գանձասարի տաճարն ու գավիթը հանդիսանում են 13-րդ դարի հայկական ճարտարապետության ու քանդակագործական արվեստի հանրագիտարանը:



ՎԱՐՈՒԺԱՆ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ

# Կողմնացույց



Մարտինը խնդրեց, և հայրը նրա համար կողմնացույց գնեց: Իհարկե, Մարտինի հետաքրքրասիրությունը դեպի կողմնացույցը ծագել էր աշխարհագրության դասից, որի ընթացքում հյուսիսը, հարավը, արևելքը, արևմուտքը հատուկ նշանակություն էին ստացել: Անշուշտ, դպրոցից տուն, տնից կինո, թատրոն կամ այլուր Մարտինը կարող էր գնալ առանց կողմնացույցի՝ չենթարկվելով մոլորվելու ոչ մի վտանգի: Սակայն կողմնացույցով ավելի հետաքրքիր էր: Նա գիտեր, որ ճանապարհորդների այդ սիրելի գործիքի մեջ մի մագնիսացած սլաք կա, որը միշտ շրջվում է դեպի հյուսիս, և նա ըստ այնմ պետք է շրջեր գործիքը և իմանար, թե որտեղ են գտնըվում հարավը, արևելքը, արևմուտքը՝ իր բըռնած դիրքի համեմատությամբ: Եվ նա այդ կարող էր իմանալ առանց արեգակի օգնության, երբ եղանակը ամպամած էր կամ թե՝ մութ էր:

Նա կողմնացույցով հայտնաբերեց, որ դըպրոցը գտնվում է իրենց տնից դեպի հարավ-արևելք, իսկ շուկան՝ հյուսիս-արևմուտք, հայրիկի աշխատավայրը՝ հյուսիս-արևելք, մայրիկինը՝ հարավ-արևմուտք: Նա որոշեց նաև կրկեսի, դրամատիկական թատրոնի, համերգասրահների աշխարհագրական դիրքերը: Նրա այդ հայտնագործությունները առանձին արժեք չունեին գիտության համար, սակայն այնպիսի փաստեր էին, որոնք ինքն էր մատնանշել առաջինը: Նա այդ մասին տեղյակ էր

պահել իր ամենամոտիկ ընկերոջը՝ Գաբրիելին, որին հաղորդել էր, թե ինչ աշխարհագրական հարաբերությունների մեջ են փուտբոլի ստադիոնը և այն հաստատությունները, որոնք գործնական, հաճելիության կամ նախասիրության նշանակություն ունեին նրա կամ իրենց երկուսի համար:

Քարտեզով երկար ճամփորդություն չկատարելու դեպքում կողմնացույցը շուտ է կորցնում իր հետաքրքրությունը: Եվ Մարտինը, որը ոչ աշխարհահռչակ, ոչ էլ շարքային ճանապարհորդ էր, շուտով ձանձրացավ և



ավելորդ համարեց այդ գործիքի ներկայությունն իր գրպանում կամ դպրոցական պայուսակում: Եվ քանի որ լուրջ որոշումներ կայացնելիս նա դիմում էր իր ամենամտերիմ ընկերոջը՝ Գաբրիելին, ուստի այս անգամ էլ այդպես վարվեց:

— Ի՞նչ անեմ,— հարցրեց ընկերոջը,— ախր, կուզենայի կողմնացույցը փոխանակել որևէ ուրիշ բանի հետ: Սա ինձ պետք չէ բոլորովին:

— Ինչի՞ հետ կարող ես փոխանակել,— բարձրաձայն խորհրդածեց Գաբրիելը, ապա կարճ դադարից հետո շարունակեց,— փոխանակիր ժամացույցի հետ:

— Ձե՞ռք ես առնում,— գլուխը թափ տըվեց Մարտինը,— ժամացույցը թանկարժեք իր է: Ո՞վ կփոխանակի:

— Ալբերտը մի փչացած ժամացույց ունի,— ճշտեց Գաբրիելը,— նա կհամաձայնի փոխանակել:

— Ինչի՞ս է պետք փչացած ժամացույցը,— ձեռքը վեր բարձրացրեց Մարտինը:

— Փչացած ժամացույցը,— նկատել տվեց Գաբրիելը,— օրական երկու անգամ ճիշտ է ցույց տալիս ժամանակը:

— Օրական երկու անգամ ժամանակն իմանալն ինչի՞ս է պետք:

— Այդ դեպքում կողմնացույցը փոխանակիր օրացույցի հետ,— առաջարկեց Գաբրիելը:

— Մի քանի ամիս հետո այդ օրացույցը բանի պետք չի լինի, իսկ կողմնացույցս կա ու կմնա,— չհամաձայնեց Մարտինը:

— Թե որ այդպես է, փոխանակիր ուղեցույցի հետ,— խորհուրդ տվեց Գաբրիելը:

— Ի՞նչ ուղեցույց,— հարցրեց Մարտինը:

— Աշխատանքային ռեժիմի ուղեցույց, ճանապարհորդական ուղեցույց, ազնիվ վարքագծի ուղեցույց, մասնագիտություն ընտրելու ուղեցույց, ուղեցույց՝ ուր գնալ սովորելու: Այնքան ուղեցու՜յց...

— Չէ-է՜-է... շատ երկարացրիր,— չհավանեց Մարտինը ընկերոջ խորհուրդը,— ինձ կոնկրետ մի բան է պետք, որ համարժեք լինի իմ կողմնացույցին: Օրինակ՝ ինքնահոս գրիչ կամ ծալովի դանակ...

— Ինչ որ մի բանի «ցույց»-ը պետք է փոխանակես մի ուրիշ բանի «ցույց»-ով, որպեսզի ճիշտ լինի,— համառեց Գաբրիելը:

— Օրինակ՝ էլ ի՞նչ «ցույց» կա որ...— հետաքրքրվեց Մարտինը:

Գաբրիելը մտածեց և ասաց.

— Ապացույց...

— Ի՞նչ ապացույց,— զարմացավ Մարտինը:

Եվ Գաբրիելը հանդիսավոր պատասխանեց.

— Իմ այն ապացույցը, որ քեզ ոչ մի կողմնացույց պետք չէ, որ կողի ես ընկել՝ չցանկանալով ոչ մի ուրիշ ձևի «ցույց»:

Մարտինը ծիծաղեց և ասաց.

— Իմ կողմնացույցը փոխանակում եմ քո ապացույցի հետ: Բայց հետո, հետագայում, երբ կարիք ունենամ օրա-ժամա-ուղեցույցի, այն ժամանակ ի՞նչ անեմ:

— Դիմիր քո ամենամտերիմ ընկերոջը,— վրա բերեց Գաբրիելը:

Եվ Մարտինը Գաբրիելին նվիրեց իր կողմնացույցը, թեև վերջինս նույնպես երկարատև, վտանգավոր ճանապարհորդության դուրս գալու հեռանկար չուներ և երևի ձանձրանալուց հետո այն պիտի փոխանակեր մեկ ուրիշի «ցույցի» հետ:

ՅՈԶԱՍ ՆԵԿՐՈՇՅՈՒՍ
(լիտվացի մանկագիր)

# Դասերը

Հանձնարարված է՝
Բառեր սովորել,
Նոր տառեր գրել,
Փոքրիկ երգ երգել,
Հողն այս պահպանել:

Հանձնարարված է՝
Հայրենին պահել,
Մայրիկին՝ սիրել,
Քրտինքը հարգել,
Առջևից քայլել:

Հանձնարարված է՝
Նոր աստղեր վառել,
Տիեզերք ճախրել,
Խաղաղությունը
Կրծքով պահպանել:
Հանձնարարված է
Ինձ՝ մեծանալ Մարդ:

# Թռչող ծաղիկ

Գնամ, քաղեմ այս
Վարդն էլ քնքշագին,
Եվ հյուսեմ իմ թարմ
Ծաղկեպսակին:
Բայց նա թափեց ցողն
Ու լուռ ճախրեց վեր՝
Մեկեն դառնալով
Գույնզգույն թիթեռ:

# Սոխակը

Փոքրիկ սոխակը տագնապով անվերջ
Բույնն էր թաքցրել խիտ ճյուղերի մեջ,
Ապրում էր թաքուն, գնում ու գալիս
Եվ մեծ ու փոքրին հանգիստ չէր տալիս:
Երգու՛մ էր, երգում ողջ գիշերն, ահա—
Օյ, լինգու, լինգալլա,
Լա՛, լա՛...

Թարգմանությունը՝ ԿԱՐՈ ՄԵԼԻՔՍԵԹՅԱՆԻ
Նկ. ՀՈՎՆԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ



# Պիոներական հաշվետվություններից

● Մեր դպրոցի պիոներական կազմակերպությունը 1983—84 ուսումնական տարին ավարտեց առանց երկտարեցիների:

Մեր դրուժինան չորրորդ տարին է, ինչ կրում է աչքիհայինի կոչումը:

Հոկտեմբերի 2-ին՝ համամիութենական ռադիոտողանի օրը, պիոներական բոլոր ջոկատները ստանձնեցին իրենց պիոներական խոսքը և ձեռնամուխ եղան դրա կատարմանը: Ռադիոտողանից հետո դրուժինան աշխատանքի անցավ դպրոցամերձ հողամասում: Նույն այդ օրը հավաքեցինք 800 կիլոգրամ թղթի թափոն: Հետագայում էլ մեր դրուժինան աշխատեց լավ և կատարեց տված պիոներական խոսքը:

Դպրոցում գործող պատանի ավտոտեսուչների և պատանի հրշեջների խմբակները աչքի ընկան շրջանային մրցումներում:

Լավ է աշխատել նաև ինտերնացիոնալ բարեկամության ակումբը, որը փառապանծ հաղթանակի 40-ամյակի տարում նամակագրական նոր կապեր հաստատեց մեր երկրի հերոս քաղաքների պիոներների հետ:

Լույս ընծայեցինք համաշխարհային 12-րդ փառատոնին նվիրված պատի թերթ, ուր արտացոլվել են բոլոր փառատոների պատմությունը: Կազմել ենք փառատոնային ալբոմ:

Ամռանը մեր պիոներները աշխատեցին դպրոցի արհեստանոցում: Հույս ունենք, որ նոր ուսումնական տարին էլ կնշանավորենք հայրենանվեր շատ գործերով:

ԴԱՎԻԹ ՍՏԵՓԱՆՅԱՆ

Երևան, Ստ. Զորյանի անվան № 56 միջն. դպրոցի դրուժինայի խորհրդի նախագահ

● Գայի անվան մեր պիոներական դրուժինայում գործող ինտերնացիոնալ բարեկամության ակումբը, քանի որ դպրոցը կրում է բուլղարացի բանաստեղծ Պեյո Յավորովի անունը, առավել սերտ կապերի մեջ է բուլղար պիոներների հետ:

Մեր դրուժինան ակտիվորեն մասնակցեց Համամիութենական լենինյան շաբաթօրյակին, համամիութենական «ԲԱՄ-ին՝ պիոներական գնացքներ», «Միլիոն՝ հայրենիքին» և քաղաքային «Երևանի մետրոպոլիտենին՝ պիոներական հոգատարություն» օպերացիաներին: Մեր դպրոցում լավ հիմքերի վրա են դրված ռազմամարզական միջոցառումները: «Փայլակ» ռազմամարզական խաղերի շրջանային փուլում շահեցինք յոթ պատվոգիր:

Դրուժինայի պիոներներից շատերը (Ալիկյան Անահիտ, Եփրեմյան Հասմիկ, Ծաննապանյան Անուշիկ) լավ հոկվարներ եղան հոկտեմբերիկների համար: Նրանց հոկտեմբերիկներից շատերը արժանիորեն ստացան պիոներական փողկապներ:

Թերություններ էլ ունենք: Նշենք թեկուզ փողկապ չկապելու փաստը: Մեր որոշ պիոներներ փողկապ չեն կապում, իբր՝ իրենք արդեն մեծ են: Մինչդեռ նրանք երդվել են սրբորեն կատարել պիոներական օրենքները:

ԼՈՒՍԻՆԵ ՀԱԿՈԲՅԱՆ

Երևան, Պ. Յավորովի անվան № 131 միջնակարգ դպրոց, դրուժինայի խորհրդի նախագահ

● Մեր դրուժինայի պիոներները միահամուռ արձագանքեցին «Պիոներսկայա պրավդա» թերթի հայտարարած օպերացիային: Մեր երկրի պիոներները հավաքելով 40 միլիոն ստորագրություն, պահանջում էին չիլիացի

երիտասարդ հակաֆաշիստներ Ալվարո Վեգայից և Օրասիո Լիրեից ազատել ֆաշիստական կեղեքումներից: Մեզ համար հաճելի էր, որ այդ ստորագրությունների մեջ հազարից ավելին մեր պիոներների, նրանց ծնողների, հարազատների և բարեկամների ստորագրություններն էին:

Մեր դպրոցի ինտերնացիոնալ բարեկամության ակումբը կապերի մեջ է մեր հայրենիքի 55 համարը կրող մի շարք դպրոցների հետ, ինչպես նաև Հարավսլավիայի, ԳԴՀ-ի, Լեհաստանի մեր հասակակիցների հետ:

Ինտերնացիոնալ բարեկամության ակումբի աշխատանքներին ակտիվորեն են մասնակցել հատկապես 7-րդի «2» դասարանի պիոներները: Նրանք անց են կացրել Հունգարիային, Չեխոսլովակիային նվիրված օրեր:

Մոսկովյան 12-րդ փառատոնի կապակցությամբ մեր դրուժինայում ստեղծվեց Խաղաղության ֆաբրիկա: Մասնակցել ենք «Միլիոն՝ հայրենիքին» օպերացիային: Աչքի ընկան 7-րդի «4», 6-րդի «4» և «1», 5-րդի «2», «4» և «1» դասարանների պիոներները: Նրանք հավաքեցին 2,5 տոննա թղթի թափոն:

Մեր «Թիմուրական» շտաբի պիոներները վերցրել են 14 վետերանների շեֆությունը: Թիմուրականները չսահմանափակվեցին նրանց հետ սոսկ հանդիպումներ կազմակերպելով: Մեր վետերանները, ավաղ, արդեն շատ են ծերացել և ավելի շատ են զգում մեր օգնության կարիքը: Հաճախ ենք այցելում նրանց: Մենք սիրում ենք նրանց: Հիշում եմ, թե ինչպիսի ապրումներ ունեցանք, երբ փետրվարի 28-ի հանդիպմանը մի շարք վետերաններ բացակայել էին:

Մենք ունենք ենթաշեֆ մանկապարտեզներ, որոնց հետ միշտ սերտ կապերի մեջ ենք: Նրանց նոր տարվա հանդեսներին մեր դրուժինայի պիոներները մասնակցեցին համերգներով:

«Աստղիկ» ակումբը դպրոցի հոկտեմբերիկների հետ ժամանակին ու բարձր որակով կազմակերպեց ու անցկացրեց «Կարմիր աստղիկ», «Կարմիր փողկապ», «Գրքի շաբաթ» և մի քանի այլ միջոցառումներ:

«Փայլակ» խաղի շրջանային փուլում մեր դրուժինան առաջնություն շահեց:

Թերություններ նույնպես ունեցել ենք. օրինակ, մեզ չի հաջողվել բարձր մակարդակով կազմակերպել դպրոցի հերթապահությունը: Իհարկե, լավ գործեր արվել են, բայց, մեծ անելիքներն առջևում են:

ԱՆԱՀԻՏ ԱԴԱՄՅԱՆ

Երևան, Չեխովի անվ. № 55 դպրոցի
դրուժինայի խորհրդի նախագահ



ԹԱԴԵՎՈՍ ՏՈՆՈՅԱՆ

# ԱՆԾԱՆՈԹ ԵՂԲԱՅՐՍ

Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Մայրուղու եզրին կանգնում է մեր մեքենան, ես դուրս եմ գալիս ու հայացքս միանգամից ընկնում է դիմացի լանջին: Խոտի ծանրության տակ մի բեռնատար կռվում է լանջի հետ: Լանջը կարծես չի ուզում հանձնվել: Մեքենան զսպանակի պես առաջ ու ետ է թպրտում ու կանգնում:

Խցիկից դուրս է թռչում մի տղա. պտտվում մեքենայի շուրջը: Մինչ մերոնք ճանապարհի հակառակ եզրին ծաղիկների մեջ շրջում են, ես վազում եմ դեպի բեռնատարը: Որքան մոտենում եմ, այնքան աչքերիս չեմ հավատում: Վարորդը բոլորովին փոքր մի տղա է, դպրոցական տարիքի:

— Բարև՛:

Նա տնքալով մի քար է հրում ետևի անիվի տակ ու բարևում ինձ:

Նայում է երկնքին, ուր ամպերը գնալով մթնում ու շատանում են, հետո՝ ներքև, դեպի ճանապարհի ոլորանները:

— Տեսնո՞ւմ ես խոտ բարձած այն բեռնատար մեքենաները: Մեր գյուղի մեքենաներն են, ճանապարհով մինչև գյուղ մի ժամ կլինի: Իսկ այսպես ավելի մոտ է, կես ժամում գյուղ եմ հասցնում խոտը, բենզին քիչ եմ ծախսում, սա իմ ճանապարհն է, ես եմ բացել:

— Դու վարո՞րդ ես:

— Վարորդ չեմ, վարել գիտեմ, մեր տանը բոլորն էլ վարորդ են՝ հայրս, եղբայրներս:

— Դու է՞լ ես վարորդ դառնալու:

— Երևի: Այս մեքենան էլ եղբորս մեքենան է: Նա հիվանդ է, իսկ մեքենան պարապ չպիտի մնա, խոտը դաշտերում է, եղանակն էլ խառնվում է, որ անձրև եկավ՝ կորած ենք:

— Օգնելու բան կա՞,— հարցնում եմ:

— Չէ, ուղղակի շարժիչը պիտի մի քիչ հովանա:

Այս անակնկալ հանդիպումն արդեն կլինի չորս-հինգ տարեկան: Ես այսօր հիշել եմ, որովհետև եղբայրս դպրոցը շուտով ավարտելու է ու չգիտի, թե ինչ մասնագիտություն ընտրի: Իսկ այն տղան երևի արդեն հաստատ որոշել էր, գիտեր:



— Ի՞նչ կուզեիս դառնալ,— հարցնում եմ եղբորս:

— Դժվար հարց ես տալիս, եղբայր,— ինձ թվում է ծաղրելու պես պատասխանում է նա:

Խոսակցությանը միջամտում է քույրս.

— Կարգին սովորու՞մ է, որ մի տեղ ուսումը շարունակեր: Ի՞նչ պետք է ուզի դառնալ, կարծես՞ իր ուզելով է:

— Բա ի՞նչ է,— բարկանում է եղբայրս,— սովորիր, հա սովորիր: Նայիր, հարևան Մարիամ տատը իր թոռանն ամեն օր ինչ է ասում՝ էդ ավարտածդ ինստիտուտը կոպեկի արժեք ունի՞, որ ասելուցս հետո մի բան մինչև անում ես, հոգիս հանում ես:

— Մարդը կարող է անգրագետ լինել, բայց լինել իսկական մարդ: Բայց ավելի լավ չէ՞, որ համ գիտելիքներ ունենաս, համ կարգին մարդ լինես:

— Դժվար բան ես պահանջում, եղբայր,— էլի ինձ թվում է, թե ձեռք առնելու պես է պատասխանում եղբայրս:

— Հեշտ բան չկա, իմացա՞ր,— վրա է տալիս քույրս:

Տատս միջամտում է՝ խոսքն ուղղելով ինձ.

— Տեր կանգնեցի՞ք, որ սովորեր...

— Տատ, տեր կանգնելու ո՞րն է, գիրքը որ մարդու աչքի գրողը լինի, այդ մարդուն ինչ ուզում ես արա՝ կսովորի՞,— ասում է քույրս:

— Լավ, լավ, բուն նյութից հեռացանք, նստել ենք որոշելու, թե մեր սիրելի եղբայրը ինչ է դառնալու: Ախպերիկ,— քթքուշ նրան եմ դիմում,— ի՞նչ ես ուզում դառնալ:

— Դժվար հարց ես տալիս, եղբայր, ես ծնված օրվանից չեմ կարողանում որոշել, դուք ուզում եք տնային մի ժողովով, այն էլ հայրիկի բացակայությամբ ինձ կյանքի ինչ-որ մի առվի մեջ հրեք, որը մի տեղ գուցե ճահճանում է:

— Այ տղա, մի փիլիսոփայիր, է՛, ասա, թե ինչ ես ուզում դառնալ,— բարկանում է քույրս:

— Մինի՛ստր...

— Տո՛... տո՛... տո՛...

Բաց պատուհանից ներս է խուժում մեքենայի ազդանշանը:

— Հայրիկը եկավ,— տեղից վեր է թռչում ու պատիճաններով ներքև է նետվում-գահավիժում եղբայրս:

— Ո՞նց իմացավ հայրիկն է, թե հայրիկը չէ...

— Բան էր պետք, որ դուրս թռչի,— ասում է քույրս:

Պատուհանից դուրս եմ նայում, իրոք որ, հայրիկն է: Ինձ տեսնելով, ասում է՝

— Ասա՝ թող գա ներքև:

— Ես գա՞մ,— հարցնում եմ:

— Չէ, ասացի՝ թող եղբայրդ գա,— պատասխանում է նա:

Իսկ եղբայրս արդեն նրա մոտ է: Անիվն են ուզում փոխել: Մինչև ես էլ եմ ներքև իջնում,

եղբայրս գործն ավարտելու վրա է: Նա անիվը տեղն է դնում:
— Տուր պտուտակները ես ձգեմ,— ասում եմ:
— Դե լավ, պտուտակներն էլ դու ձգիր,— վարպետավարի՞, թե՞ ախպերավարի ասում է նա, ցույց տալով, որ հիմնական գործն ավարտված է, պտուտակ ձգելն էլ կարելի է թույլ տալ գործից հեռու մի մարդու: Բայց ես սխալվում եմ.
— Ի՞նչ ես անում, ո՞նց ես ձգում, անիվն այդպե՞ս են ամրացնում, պտուտակներն այդպե՞ս են ձգում:
— Դե լավ, քեզ մի երևակայիր,— նեղանում եմ,— պտուտակ է՝ ձգում եմ, էլի, կարևորը՝ որ պինդ լինի:
— Պտուտակներն այդ հերթականությամբ որ ձգեցիր, անիվը ճանապարհին խմած մարդու պես ութ կգրի, հասկացա՞ր, դու էլ խցիկում կբժժես: Անիվի պտուտակներն հարկավոր է ձգել խաչուխաչ ու աստիճանաբար՝ հավասարապես, հասկացա՞ր: Երեկ մեր գրապահարանի բոլոր գրքերը քրքրեցի, այդ մասին ոչինչ գրված չկար, այնպես որ՝ քեզ ներելի է, դու որտեղի՞ց իմանայիր,— ծեփում է եղբայրս ու հայրիկի հետ ծիծաղում: Հետո բենզինով երկար-բարակ լվացվում է: Նա բենզինի հոտը շատ է սիրում:
Բարձրանում ենք տուն:
— Տղա ջան,— տատս դիմում է հորս,— էս մեր փոքրը ի՞նչ է դառնալու: Դպրոցը շուտով կավարտի, ախր...
— Այ մեր, մենք՝ ես, իմ եղբայրը, իմ հորեղբոր, քեռու ու մորաքույր-հորաքույրների զավակները, երբ դպրոցն ավարտեցինք, մեզ այդ հարցը տվեցի՞ն: Կամ՝ ես, որ վարորդ էի ուզում դառնալ, մեկն ինձ ստիպեր, թե՝ չէ, կոշկակար դարձիր, կոշկակա՞ր կդառնայի:
— Ձեր ժամանակ ուրիշ, հիմա՝ ուրի՞շ...
— Տատը ճիշտ է ասում,— հանկարծ եղբայրս հայտնագործություն արածի պես բացականչում է,— հիմա ուրիշ է, հիմա և դու ես մասնագիտություն ընտրում, և մասնագիտությունն է քեզ ընտրում:
— Կարո՞ղ է փիլիսոփա դառնաս, եղբայր,— փորձում է ծաղրել քույրս, բայց եղբայրս շատ լուրջ պատասխանում է.
— Դժվար հարց ես տալիս, քույրիկ:
— Լավ, որ այդպես է, մի հեշտ հարց տամ, եղբայրս,— ասում եմ մի այնպիսի տոնով, որով հույս ունեմ եղբորս դուրս բերել խուսափողակա՞ն, թե՞ կատակային տրամադրությունից: Կարծես ստացվեց, եղբայրս շրջվեց իմ կողմն ու՝
— Ասա,— պատրաստակամությամբ սպասեց իմ հարցին:
— Ենթադրենք վարորդ ես, դաշտից խոտ եք տեղափոխում գյուղ, եթե ասֆալտապատ ճանապարհով դաշտից գյուղ գնաս, կտևի մեկ ժամ, բայց կարող ես նաև սարալանջերի չեղած ճանապարհով գյուղ հասնել, շահելով 20 րոպե, այսինքն՝ օրական մեկ անգամ ավելի կարող ես դաշտից խոտ հասցնել գյուղ: Ո՞րը կընտրեիր՝ ասֆալտապատ ճանապա՞րհը, թե՞ սարալանջերը:
— Ասֆալտապատ ճանապարհը,— միանգամից վրա տվեց եղբայրս:
— Ինչու՞, ժամանակ կշահես, բենզին քիչ կծախսես...
— Բացատրեմ: Նախ՝ ժամանակ, ճիշտ է, կշահեմ, բայց դա կծածկի՞ մյուս վնասները: Սարալանջերով անընդհատ պետք է գնալ միմիայն առաջին և երկրորդ արագություններով, որը շարժիչի համար վնասակար է, և դժվար է ասել՝ բենզինը կտնտեսվի՞, թե՞ ավելի շատ կծախսվի: Իսկ ամենավտանգավորն այն է, որ ճանապարհն անծանոթ է, վտանգը՝ հետևաբար, մեծ: Վարորդը ճանապարհը բացող չէ, վարորդը ճանապարհ գնացող է,— խոսքը եղբայրս ուղղում է հայրիկին,— չէ՞, հայրիկ:
— Հա, տղա ջան, ճիշտ ես... այդքանը եթե արդեն գիտես, սրանից հետո թույլ եմ տալիս, որ դու մեքենան ավտոտնակ մտցնես: Վարորդը ճանապարհ բացող չէ, իհարկե, ճանապարհ գնացող է, ու վարորդի համար էլ կարևորն այն է, թե ինչպես կանցնի իր ճանապարհը: Ասենք, մի օր մեքենայով երկար ճանապարհ ես գնում, ուղևորներդ կարդացած, զարգացած մարդիկ են, զրուցում են ու կարդացած գրքերից օրինակներ բերում: Դու պետք է բերանդ ջուր առած նստե՞ս, չհասկանա՞ս, թե ինչ են խոսում:
Եղբայրս մի քիչ մտածելուց հետո ասաց.
— Ոնց որ թե արդեն որոշել եք, հայրիկ, որ ես վարորդ եմ դառնալու...
— Չէ, ուղղակի խոսքն այդպիսի ընթացք ստացավ,— պատասխանեց հայրիկը,— պատճառը գուցե այն է, որ իմ կարծիքով հիմա բոլոր մարդիկ պետք է լավ վարորդներ լինեն ու ճանապարհ գնալ իմանան: Իսկ դու եթե վարորդ դառնաս, ես դեմ չեմ լինի:
— Տեսնենք,— ասաց եղբայրս,— դեռ մտածելու ժամանակ կա...
— Քեզ է թվում, թե կա,— ասացինք ես ու քույրս միաժամանակ:
— Վախենում եմ, թե դու երբեք մտածելու ժամանակ չգտնես,— ցավով ավելացրեց հայրս,— քանծ անցնես այն կայարանը, որտեղ պետք է իջնեիր...




Անցյալ տարի լույս տեսավ կենսաբանական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր Լևոն Հարությունյանի «Քո շրջապատի ծառերը» գիրքը, որը նպատակ ունի ընթերցողին օգնել ճանաչելու և տարբերելու մեր բնաշխարհում տարածված ծառատեսակները:

Ընթերցողի սեղանին է հեղինակի երկրորդ «Քո շրջապատի թփերը» գիրքը:

Հայաստանը երկրագնդի այն հազվագյուտ վայրերից է, որտեղ բուսական տեսակների անսովոր առատություն գոյություն ունի: Այստեղ ամեն քայլափոխի կարելի է հանդիպել բույսերի, որոնք երկրագնդի այլ շրջաններում չեն հանդիպում: Այդպիսի տեսակների թիվը հասնում է 180-ի: Իսկ դա մեծ թիվ է, քանի որ Հայաստանի տարածքը անհամեմատ փոքր է այն երկրներից, որտեղ հազվագյուտ տեսակները մի քանի տասնյակից չեն անցնում: Մեզ մոտ քիչ չեն նաև այլ երկրներից, օրինակ, Հյուսիսային Ամերիկայից, Ճապոնիայից, Չինաստանից ներմուծված բույսերը, որոնք առատորեն աճում են, ծաղկում, պտղաբերում ոչնչով չզիջելով «տեղացի» բույսերին: Անհրաժեշտ է ճանաչել շրջապատի բուսական աշխարհը և գուրգուրանքով վերաբերվել անհետացող տեսակներին, առանց որոնց անհնար է պատկերացնել հայրենի բնաշխարհը:

Ահա, այդ հնարավորությունն է մեզ ընձեռում Լևոն Հարությունյանի երկրորդ՝ «Քո շրջապատի թփերը» գիրքը:

Գրքից օգտվելը բավականին հեշտ է: Բույսը համեմատելով գունավոր նկարի հետ և կարդալով համապատասխան բնութագիրը, կարելի է ճշտորեն կողմնորոշվել ու բնության մեջ գտնել այն: Յուրաքանչյուր տեսակի համար տրված է հայերեն, ռուսերեն, լատիներեն անվանումը, նշված է բույսի ծագման ու տարածման շրջանը և տնտեսական նշանակությունը:

---

**ՍՎԵՏԼԱՆԱ ԱՍԱՏՐՅԱՆ**





ԷԴՎԱՐԴ ՄԻԼԻՏՈՆՅԱՆ

# Աքլորակռիվ

Փողոցի մեջտեղ,
Խառնակ ու ցրիվ,
Եվ իրար գլխի,
Եվ ծուռ ու խռիվ՝
Կանգնել են մարդիկ,
Նայում են ուրախ,
Նայում են գնծուն
Աքլորակռիվ:

Երկու գունավոր
Ու հսկա աքլոր
Այնպես են իրար
Կտցում ու ճանկում,
Որ փետուրները
Թռչում հողմահար
Եվ ծիածան են
Օդի մեջ կապում:

Նրանց աչքերից
Կայծերը ցայտում
Եվ առվակի մեջ
Թշշում են, փշշում,
Նրանց կտուցին
Ծողերը բեկվում
Սրերի նման
Մի կողմ են թեքվում:
— Դե, կտցիր ուժեղ,
Դե, հաղթիր նրան,—
Գոչում է մեկի
Տերը բաղաձայն:
Մեկելի տերը
Կանգնել է հպարտ.
Իր աքաղաղը
Կհաղթի հաստատ:
Եվ թռչունները
Զարնվում ահեղ,
Ճկվում են, բացվում,
Ինչպես նետաղեղ,
Իսկ երկինք թռչող
Փետուրներն արնած
Նայում են վերից
Տերերին անսանձ:

— Դե, կտցեք իրար,
Դե, զարկեք ուժեղ,—
Կանչում են կայտառ
Բեղով ու անբեղ,—
— Քիչ է մնում, որ
Ծուղրուղու կանչեք,
Կանգնել եք անգործ,
Հո դուք ծույլեր չե՞ք:

Եվ աքլորները
Նոր ուժ հավաքած՝
Իրար են բախվում
Ճանջերով հոգնած,
Փետուր փետուրի
Այնպես են ձուլվում,
Որ տերերն անգամ
Նրանց չեն ջոկում:

— Դե, կտցիր նորից,
Դե հաղթիր նրան,—
Գոչում է խռպոտ
Տերը բաղաձայն,
Իսկ մյուսինը
Կանգնել է հպարտ.
Հոնքն էլ չի շարժում՝
Աքլորն է անպարտ:
Իրիկունն արդեն
Իջնում է խաղաղ,
Մտնում է ավան,
Մտնում է քաղաք,
Մինչ աքլորները
Կռվում են հոգնած,
Էլ փետուր չկա,
Որ թռչի առկայծ:
Երկու մեծ աքլոր՝
Խղճուկ ու տկլոր՝
Երկար վզերով
Իրար փաթաթվում,
Սուր-սուր ճանկերով
Ամուր ագուցվում
Եվ կտուց-կտցի՝
Արձան են դառնում:
Քաշում են վերից,
Քաշում են վարից,
Բայց չեն բաժանվում
Նրանք իրարից:
Հարազատի պես
Գրկել են միմյանց,
Ծանր շնչում են
Ու նայում մարդկանց:
Այս աքլորները
Հասկացան ընդմիշտ
Որ խաղալիք են
Այսպես եղել միշտ:
Լուսնի լույսի տակ՝
Խառնակ ու խռիվ,
Եվ իրար գլխի,
Եվ ծուռ ու խռիվ՝
Կանգնել են մարդիկ,
Նայում են ապշած...

Նկ. ԱՆԴՐԱՆԻԿ ԿՈԼՈԿՅԱՆԻ

# Այդ դառը, դառը «հինգը»

Ժամը ութին արդեն դպրոցում էի: Երբ մտա դասասենյակ, գրեթե ամբողջ դասարանը շրջապատեց ինձ.

— Արմեն, պատմության գրավորը գրե՞լ ես:

— Ոչ ոք չի գրել, ձայն եթե չհանես, չի հիշի:

— Բոլորին չես խայտառակի, չէ՞:

Ոչինչ չպատասխանելով, նստեցի իմ նստարանին և սկսեցի հարմար տեղ որոնել տետրս պահելու համար:

Դասը սկսվեց: Երբ մեր ուսուցիչը՝ ընկ. Հակոբյանը, երկու հոգու դաս հարցրեց, պարզվեց, որ նա բոլորովին էլ չի մոռացել տրված առաջադրանքի մասին: Լուռ նստել էինք: Ծուտով իմ հերթն էլ հասավ: Ուսուցչի հավատով լի հայացքն ինձ ուղղվեց: Ես շատ վատ զգացի, որ հուսախաբ պետք է անեմ այն մարդուն, որը ինձ համարում է իր լավագույն աշակերտներից: Բայց ինչ արած, ընկերներիս խոստացել էի, հանուն ընկերասիրության... վերցրի օրագիրս և գնացի դեպի քարտեզը: Սկսեցի պատմել: Բոլորը լարված լռում էին, իսկ ես ցանկանում էի մինչև դասի վերջ պատմել-պատմել, միայն թե անելիքս չվերջանար: Բայց... վերջացավ: Պատմության ուսուցիչը տեսնելով, որ ես տետրի մասին ոչինչ չեմ ակնարկում, ինքը նույնպես ոչինչ չասաց: Իսկ երբ օրագիրը ինձ վերադարձրեց՝ նշանակված «հինգ» գնահատականով, նրա աչքերում դժգոհություն ու հիասթափություն տեսա: Կուզենայի, որ այդ դառը «հինգը» չլինեը, արժանի չէի: Անցան ամիսներ, և կարծես վաղուց ամեն ինչ մոռացվել է: Բայց հոգուս խորքում, մի ծածուկ տեղ, մի հարց մնաց անպատասխան. միթե՞ իմ արածը ընկերասիրություն էր:

**ԱՐՄԵՆ ԳՐԻԳՈՐՅԱՆ**
**Լենինական, 18-րդ դպրոցի 7-րդ դաս.**

Փոքրիկը տեսնում է առանձին կանգնած վագոնը և ասում է.
— Փոքր է. կմեծանա, կղառնա գնացք:

Ամպրոպից հետո, տեսածի մասին փոքրիկը պատմում է.
— Կայծակը կայծակեց, ու անձրև դուրս թռավ:

Ձմեռ է, փոքրիկը մորը դուրս է կանչում.
— Արի,— ասում է,— գնանք սայթաքելու:

Երկու փոքրիկներ զրուցում են. մեկը մյուսին ասում է.
— Իմ տատիկը շատ ծեր է, նա երևի արդեն տասը տարեկան է:

Մայրը քնեցնելիս ասում է.
— Փակիր աչքերդ ու քնիր:
— Չեմ կարող փակել,— ասում է փոքրիկը:
— Ինչու՞:
— Կշոգեմ:

Փոքրիկը մոր հետ կանգնած է կանգառում, կողքով մոպեդ է անցնում.
— Մամա, նայիր,— ասում է,— ջահել մոտոցիկլետ է անցնում:



# ԺԱՄԱՆՑ



1. Զարկերով ժամացույցը քանի՞ անգամ է զարկում մեկ օրում:

2. Սեղանին դրված է 10 արկղ: Յուրաքանչյուրում կա 10 միանման դրամ: 9 արկղի դրամներից ամեն մեկը կշռում է 10 գրամ, իսկ մեկի մեջ դրամները կեղծ են և կշռում են 9-ական գրամ:

Փորձիր մեկ կշռումով որոշել, թե ո՞ր արկղում են դրամները կեղծ:

3. Գծագրի վրա պատկերված է յոթ պատկեր: Պահանջվում է երեք ուղիղ գծերով գծագիրը կտրատել յոթ մասի այնպես, որ մասերից յուրաքանչյուրի վրա լինի մեկ պատկեր:



### «ՊԻՈՆԵՐ» № 7-Ի ԺԱՄԱՆՑԻ ՊԱՏԱՍԽԱՆԸ

1. Բուլղարիա 2. Ավետիսյան 3. Դոլուխանյան 4. Քինգ, 5. Բրումել, 6. Օշանին 7. «Ռովեսնիկ» 8. «Գրուզիա» 9. Ծահինյան:





ՀԼԿՍՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

Հասցեն՝ 375015, Երևան 15, Կարմիր բանակի փողոց № 15, Հեռախոսներ՝ 56-32-72, 58-08-33, 56-14-96, 56-43-38:

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.



ՀԱԿՈԲ
ՀԱԿՈԲՅԱՆ
ՋՐԱՆՑՔ (1971 Թ.)

Հանձնված է տպագրության 18.06.1985 թ.։ Ստորագրված է տպագրության 28.08.1985 թ.. ՎՖ 07562։ Թուղթ օֆսեթ, 70×100 1/16։ Տառատեսակը՝ Նորք։ Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. մամ., 3,9 հրատ. մամ.։ Տպաքանակ՝ 68032, Պատ. 1604։ Գինը՝ 15 կ.

Տպագրված է ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարանում, Օրջոնիկիձեի պողոտա 2.

Сдано в набор 18.06.1985 г. Подписано к печати 28.08.85 г. Формат 70×100 1/16. ВФ 07562. Бумага офсетная. Гарнитура «норк». Офестная печать. 2,92 усл. печ. листа, 3,0 уч.-изд. листа. Тираж 68032. Заказ 1604. Цена 15 коп.

**Напечатано в типографии изд-ва ЦК КП Армении, пр. Орджоникидзе, 2.**

# Գարուն







Նկ. ՄԻՀՐԱՆ ՔԵՉՕՂԼՅԱՆԻ

Գլխավոր խմբագիր՝ **ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ**

Խմբագրական կոլեգիա՝ ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ., ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՄԻԼԻՏՈՆՅԱՆ Է., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ.։

Պատասխանատու քարտուղար՝ ՏՈՆՈՅԱՆ Թ., գեղարվեստական խմբագիր՝ ՔԵՉՕՂԼՅԱՆ Մ., տեխնիկական խմբագիր՝ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ծ., սրբագրիչ՝ ԱՅՎԱԶՅԱՆ Վ.։

ԳԻՆԸ՝ 15 ԿՈՊ.

ԻՆԴԵՔՍ՝ 77806